


ԹՂԹԱՎԱՃԱՌԱՏՈՒՆ

ՏՊԱՐԱՆ ԵՒ ԿԱԶՄԱՏՈՒՆ

Վ. Եւ Հ. ՏԷՐ-ՆԵՐՍԷՍԵԱՆ

*Սուլթան-Համամ*

Կ. ՊՈԼԻՍ




Palapian, Kasapet

ՍԵՊՀԱԿԱՆՈՒԹԻՒՆ ԳԱԼՖԱՅԵԱՆ ԱԶԳ. ՕՐԻՈՐԴԱՑ ՈՐԲԱՆՈՑԻՆ

ԽԱՍԳԻՒՂԻ

# ՖՐԷՕՊԷԼԻ ՄԷԹՈՏԸ

## ՄԱՆԿԱՆՑ ՎԱՐԺՈՒՀԻՆԵՐՈՒՆ ՀԱՄԱՐ

Գրեց, Կ. Վ. ՊԱԼԱՊԱՆ

ՎԱՒԵՐԱՑԵԱԼ

ԱԶԳ. ԿԵԴՐ. ՎԱՐՉՈՒԹԵԱՆ ՈՒՍՈՒՄՆԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԷՆ

ՏՊԱԳՐՈՒԹԻՒՆ

Վ. եւ Հ. ՏԷՐ-ՆԵՐՍԷՍԵԱՆ

Կ. ՊՈԼԻՍ

1908

Ի ՅԱՒԵՐԺ ՅԻՇԱՏԱԿ

# ԱՂԱՒՆԻ ՏԻԿՆՈՋ

## ՍՌԱՏԱՋԵՌՆ ԵՐԱԽՏԱՒՈՐԻՆ

ԵՒ

## ԸՆՏՐԵԼՒՈՅՆ Ի ՊԱՇՏՕՆ ԽՆԱՄԱԿԱԼՈՒԹԵԱՆ

ԳԱԼՖԱՅԵԱՆ ԱԶԳԱՅԻՆ ՈՐԲԱՆՈՑԻՆ ՕՐԻՈՐԴԱՑ

Տայ ընծայել ի լոյս զգիրս Եղբայր Նորին

## ՎՍԵՄԱՓԱՅԼ ՆՇԱՆ ԷՖԷՆՏԻ ՔԱՋԱՋԵԱՆ

ԿԱՐԳԵԱԼ ԶԱՐԴԻՒՆՍՆ ՅՕԳՈՒՏ

## ՈՐԲԱՆՈՑԻՆ

ՈՐ Ի ՀԱՍՔԷՕՅ Կ. ՊՈԼՍՈՅ

1907

ՊԱՏՐԻԱՐՔԱՐԱՆ ՀԱՅՈՑ

ՈՒՍՈՒՄՆԱԿԱՆ ԽՈՐՀՈՒՐԴ
ԱԶԳ. ԿԵԴՐ. ՎԱՐՉՈՒԹԵԱՆ

Թիւ 14

*Կ. Պոլիս, 30 Մայիս 1907*

# ՎԱՒԵՐԱԳԻՐ

## *Ուսումնական Խորհրդոյ Ազգ. Կեդր. Վարչութեան*

*Ազգ. Ուսումնական Խորհուրդս քննութեան առաւ ուսուցիչ Կարապետ էֆ. Պալապանեանի կողմէ պատրաստուած* «Ֆրէօպէլի մէթոտը» *անուն ձեռագիրն, եւ տեսնելով թէ լաւ աշխատասիրութիւն մ'է, որ կրնայ մանկապարտէզի վարժուհիներն առաջնորդել կազմակերպելու մանկապարտէզները բուն իսկ* Ֆրէօպէլի *դիտած նպատակին եւ ուղղութեան համաձայն, վաւերեց զայն, եւ կ'արտօնէ անոր գործածութիւնն ազգ. վարժարանաց մէջ իբրեւ առաջնորդ Մանկապարտէզի Վարժուհիներու։*

Ի դիմաց Ուսումնական Խորհրդոյ

*Ատենադպիր* — *Վ. Ատենապետ*

ՊԵՏՐՈՍ ԿԱՐԱՊԵՏԵԱՆ — ՍՏ. ԿՈՒՐՏԻԿԵԱՆ

# ՖՐԷՕՊԷԼԻ ԴՐՈՒԹԻՒՆԸ

## ՆԵՐԱԾՈՒՄ

*Մեր ազգին մէջ մատաղ տղոց դաստիարակութեան դեռ եւս տրուած չէ՛ այն կարեւորութիւնն, որու իրաւամբ արժանի է ։ Հին ժամանակներէ 'ի վեր ծնողաց հոգածութեան գլխաւոր առարկան եղած է տղոց ֆիզիքականն — անոնց հագուստը, կապուստը, սնունդն և երբեմն մարմնական մարզանքներն ։ Հայ ծնողները դեռ չեն գիտեր թէ ինչ դեր կը խաղայ վարժութիւնը տղոց իմացական ու բարոյական դաստիարակութեան մէջ ։ Վերջին երեսուն տարիներուն մէջ հոգեբանական գիտութիւնն անվիճելի փաստերով հաստատեց վարժութեանց կարեւորութիւնն ու մեծ արժէքն ։ Ինչպէս արտաքին զգայարանքներն, որոնք հոգիին դուներն են և իմացական ու բարոյական դաստիարակութեան կարեւոր գործիները, նոյնպէս ֆիզիքական բոլոր կարողութիւններն և յատկութիւնները մարզանքի կարօտ են ։*

**Ֆրէօպէլի դրութիւնը** *կուգայ լիուլի լրացնել այդ պակասը ։ Մեր դաստիարակներէն մեծ մասը սխալմամբ կը կարծէ թէ՝ մանկապարտէզներու նոր դրութեան ստեղծողը* **Ֆրէօպէլն** *է, թէ՝ ան եղաւ առաջին անգամ նախադպրոցական շրջանի դաստիարակութեան գաղափարը տարածողը ։ Երբե՛ք ։ Նախնի դարերու մէջ անգամ կար սա համոզումը թէ՝ մանկան ֆիզիքական կարողութիւնները ծնած օրէն և իմացական կարողութիւնները՝ գիտակցութիւնը արթնցածին պէս պէտք է դաստիարակել ։*

*Նմանապէս* **Ֆրէօպէլը** *չ'էր առաջին անգամ քարոզողը թէ՝ մատաղ տղոց անհրաժեշտ է իրենց հասակին ու կարողութեանց համապատասխան գործունէութիւն մը, ապա թէ ո՛չ կը ձանձրանան, վնասակար ու կործանարար թերութեանց նշանակ կ'ըլլան, կը ծուլանան, կը բթանան բարոյապէս ու մտաւորապէս ։]*

**Պլատոն** *և* **Արիստոտէլ** *իրենց ժամանակին ջատագով կանգնած են մանր տղոց զուարթ խաղերուն ։* **Պլատոնի** *համար խաղը այն-*

քան կարեւոր բան մըն էր, որ կառավարութեան առաջարկեց մանր տղոց խաղի համար յատուկ տեղեր բանալ։

Ամենէն աւելի խաղերուն մէջն է որ երեւան կուգան տղայոց բնաւորութեան որոշ գիծերն, որով դաստիարակներն առիթ կունենան ուղղել անոնց գէշ հակումներն և զարգացնել օգտակար սովորութիւններ։

Ինչպէս կը տեսնուի խաղերու կարեւորութիւնը ճանչցուած էր նոյնիսկ Քրիստոսէ առաջ, իսկ անկէ ասդին, այդ նիւթին վրայ գրած են բոլոր նշանաւոր մանկավարժները։

Յոհան Ամոս Կոմենիոսի (Կոմենսքի) գաղափարով դաստիարակութիւնը պարտի սկսիլ տղայոց գիտակցութիւնը արթնցած օրէն և այդ դաստիարակութեան միջոց ուժը պիտի ըլլան խաղերն, որոնցմէ տղաք կրնան քաղել անթուելի օգուտներ։

Լօք աւելի որոշ կը խօսի։ Մեծ իմաստասէրը հակառակ է պերճ ու զարդարուն խաղալիքներու, որոնք տղայոց փոփոխամտութեան փառասիրութեան, սնապարծութեան և զանազան եպերելի հակումներուն սնունդ կուտան։ Իր կարծիքով միայն այն խաղալիքները կրնան օգտակար ըլլալ, զորս տղան ինքը կ'ստեղծէ, կը հնարէ ու հաճոյք կ'զգայ։

Բեստալոցցի ունէր իր Մանկական Դաստարանը, ուր թէև նոր մէթոտը ամբողջութեամբ չ'էր գործադրուէր, սակայն մեծ յաջողութեամբ կը կատարուէին կարգ մը մեքենական խաղեր — հիւսուածք, թղթի ծալք, կաղապարում եւայլն. ինչպէս և խմբերգն ու մարմնամարզութիւնը։ Մինչև Ֆրեօպէլի օրերը թէև միայն զարգացած անձերէ կը լսուէին նոր մէթոտի գաղափարները, բայց ասիկայ չի նշանակեր թէ հասարակ ժողովուրդը զգացած չէր անոնց կարեւորութիւնը։ Կարգ մը մեքենական խաղեր ու ընտանեկան զբաղումներ կ'ապացուցանեն որ ծնողները շատոնց ըմբռնած էին թէ մատաղ տղոց համար անհրաժեշտ է զուարթ գործունէութիւն մը, և թէ այդ գործունէութիւնը բոլորովին կ'տարբերի չափահասներու աշխատութենէն։

Թէև Մանկական Պարտէզին հիմը կազմող գաղափարները բոլորովին նոր չ'էին, թէև այն տեղ ի գործ դրուած խաղերն ու զբաղումները Ֆրեօպէլի գիւտերը չ'էին, սակայն իրաւամբ կրնանք կո'չել զանի հիմնադիրը Մանկական Պարտէզին, հիմնադիրը՝ նոր

*դրութեան, որ եկաւ աչքառու փոփոխութիւններ ներմուծել մանկավարժութեան մէջ։*

*Այս դրութիւնը թէեւ կրնայ ունենալ իր թերի կողմերը, սակայն ունի նաեւ լուրջ և օգտակար սկզբունքներ՝ դեռատի տղայոց դաստիարակութեան համար։*

*Թէեւ անկէ առաջ յայտնուած էին օգտակար գաղափարներ, թէեւ ժողովուրդը բնազդօրէն մշակած էր կարգ մը խաղեր, սակայն յայտնուած գաղափարները դրութեան մը վերածել անոնց մէջ կարգ մը հաստատել, մէկ խօսքով «Եղիցի լոյս» արտասանելը* Ֆրէօպէլի *անկապտելի փառքն է։*

*Նոր դրութեան հիմնական սկզբունքներն են.*

Ա. Մարդս բնականէն հնարող ու գործունեայ կը ծնի եւ որպէսզի Արարչութենէն իրեն տրուած այդ պաշտօնը լրացնէ, պէտք է դաստիարակել զանի այդ շաւղին մէջ: Գործունէութեան տենչը տղոց մէջ երեւան կուգայ առաջին օրերուն: Դաստիարակներու սրբազան պարտքն է նկատողութեան առնել մանկանց բնաւորութեան այդ ցայտուն գիծը եւ մատակարարել նիւթ մը՝ որ համապատասխան ըլլայ անոնց բարոյական ու մտաւոր կարողութիւններուն:

Բ. Տղայոց գործունէութիւնն ամենէն աւելի կը նշմարուի խաղին մէջ, հետեւաբար խաղը պիտի ըլլայ դաստիարակութեան գլխաւոր տարրը: Նախադպրոցական շրջանին մէջ տղայոց բոլոր զբաղումներն խաղի բնոյթ ունենալու են եւ այնպէս մը պիտի գործադրուին որ անոնց կեանքին մէջ մուտ գործեն ուրախութիւն, երջանկութիւն, ու լոյս. զօրացնեն անոնց ֆիզիքականն ու բարոյականը:

Գ. Զբաղումներն ու խաղերը պէտք է կատարել ազատ բնութեան պարտէզին մէջ, ուր տղայք կրնան մթերել տպաւորութեանց առատ պաշար մը, եւ զօրանալ ֆիզիքապէս:

Ֆրէօպէլ *ամենէն աւելի կարեւորութիւն կուտայ իր հաստատութեան մէջ պարտէզին, այդ իսկ պատճառով նոր մէթոտի դըպրոցները* Մանկական Պարտէզներ *կոչուեցան։*

Դ. Ամէն մարդ բնութենէն օժտուած է հնարելու կարողութեամբ, նպատակայարմար դաստիարակութեան պաշտօնն է առաջ մղել այդ ձիրքը եւ չ'թողուլ որ բթանայ:

**Ե. Տղայոց գործունէութիւնը կը յայտնուի երկու ձեւի տակ.**

**1. Նստական զբաղմանց մէջ:**

**2. Շարժուն խաղերուն մէջ:**

**Այս պատճառաւ պարտէզին զբաղումները երկու կարգի կը բաժնուին:**

**Ա. Նստական կամ մեքենական խաղեր**

**Բ. Շարժուն կամ մարզական խաղեր**

**Նստական խաղերուն պիտի տրուին այնպէս խաղալիքներ, որոնք կարողանան լրացնել տղայոց ճնարագործութեան տենչը, վարժեցնեն աշխատութեան եւ համբերութեան, զարգացնեն միտքը, գեղեցկագիտական ճաշակը եւ պատրաստեն ապագայ լուրջ ուսման:**

*Վերը բռնածներէն պարզապէս կերեւայ որ գործին գլխաւոր նպատակն է նպաստել տղայոց շինող, ստեղծող հակումներուն: Եւ որովհետեւ շուկան ծախուած խաղալիքներուն մեծագոյն մասը տղայոց աւերիչ հակումներուն ուժ կուտան,* Ֆրէօպէլ *իր դրութեան հիմը կը դնէ Լոքի գաղափարը — տղան ինք պէտք է շինէ իր խաղալիկը — եւ անկէ առաջ երթալով կը պահանջէ որ խաղերուն զուգընթաց առանձին նաեւ հասակին համապատասխան խօսակցութիւններ, պատմութիւններ, հանելուկներ ու երգեր:*

*Տղուն առաջին գործունէութեան նիւթը կը կազմեն մանկական պարտէզի զբաղմանց առաջին խումբը* — **Մեքենական զբաղումները:** *Զբաղումներուն երկրորդ խումբը* — **Մարզական խաղերը,** *գոհացում կուտան անոր վազելու, ոստոստելու, կայտառելու բնական տենչին:*

*Նստական զբաղմանց ժամանակ տղան ազատութիւններ կ'ըստանայ, իսկ մարմնամարզական խաղերուն կ'աշխատի այդ ազատութիւններն առաջ բերել իր իսկ անձին: Ո՞վ չի գիտեր այս փոքրիկ դերասաններուն, իրենց ամէն տեսածն անձամբ կատարելու անդուլ փափաքը: Տղուն առջեւէն կ'անցնի հաւը կչկչալով ու կեր որոնելով, ինքն ալ անոր պէս կ'իյնայ գետին հատիկներ կտցելու համար: Կը տեսնէ, կովը կ'անցնի դանդաղ քայլերով ու գլուխը դէս ու դէն տատանելով, բառաչելով. ինքն կուզէ կովին պէս քալել ու բառաչել: Ձիաւոր մը կ'անցնի սրընթաց՝ ինքն ալ հայրիկին գաւազանին վրայ կը ցատկէ եւ այս խաղով այնքան կ'ոգեւորուի որ անշունչ փայտը կենդանի տեղ դնելով, կը մորակէ երբ իր ոտքերը պարտասած ալ չեն ուզեր առաջ երթալ: Տղայք կ'օրինակեն այս-*

պէս իրենց միջավայրէն, կառապանին, ներկարարին, հիւսնին, հընձուորին ու պարտիզպանին, չուլհին, կատուին ու մկան, սագին ու բադին, թրթուրին ու թիթեռնիկին ձեւերը։ Վերջապէս տունին ու միջավայրին կենցաղն իր ամեն մանրամասնութեամբը նիւթ կը մատակարարէ տղոց խաղերուն։ Ֆրէօպէլի սուր տեսութեան վրիպած չ'էր մանկական բնաւորութեան այս գիծը։ Իր մարզական խաղերուն մէջ առատ պաշար կայ, տղոց երեւակայութիւնն ու մարմինը մարզելու համար։ Նոր մէթոտին մարզական խաղերն այլազան ու բազմաթիւ են, եթէ տղաք անոնց մէկ քանին սորվին ու կատարեն կրնան նորերն ստեղծել։ Այս խաղերը իրենց զուարթ բնոյթով ճարպիկ, աշխոյժ, հնարամիտ կընեն տղաքը, միանգամայն զօրացնելով անոնց մարմինը։

Դպրոցական մարմնամարզութիւնն իր չոր մեքենականութեամբ տաղտուկ կ'ազդէ տղոց, այս պատճառաւ նուազ օգտակար ու գործածելի է, քան մարզական խաղը, որ իր այլազան ձեւերով անօրինակ խինդ ու հրճուանք կ'ազդէ։ Վերջապէս գիտնալու է թէ ամեն տարիք իր մասնաւորն ունի եւ թէ երիտասարդ զինուորներու հաճոյք պատճառող մարզանքներ կը նեղեն ու կը ձանձրացնեն մատղաշ տղաքը։

Նոր մէթոտին զբաղմանց երկու խմբերն ալ — մեքենականն ու մարզականը, սերտ կերպով կապուած են իրարու, իրարմէ կը բղխին, զիրար կը լրացնեն, այն նպատակին կը դիմեն, որ է ներդաշնակ զարգացումը ֆիզիքական, մտաւոր ու բարոյական կարողութեանց։

Դեռ մանկապարտէզ չի մտած, երկու երեք տարեկան տղոց համար Ֆրէօպէլ կը յանձնարարէ իր առաջին եւ երկրորդ խաղալիկները — Նուէրները։ Ա. Նուէր — բրդեայ գունաւոր գնդակներ։ Բ. Նուէր — փայտէ գունտ մը, գլան մը ու խորանարդ մը։ Թէեւ այս նիւթը տղոց կարողութիւնները մարզելու համար շատ երկար չի տեւեր, սակայն մեծ մանկավարժն ուրիշ խաղալիկներու գործածութիւնը չ'արգիլեր, եթէ անոնք գործին չեն վնասեր։

Իր երկու պարզագոյն խաղալիկներովը, Ֆրէօպէլ կ'ուզէ մեզ ըզգացնել թէ այդ տարիքին մէջ տղոց կարողութիւնները սահմանափակ են, ուստի պէտք չ'է տալ անանկ նիւթ մը որով կարողանան բան մը շինել կամ ստեղծել, քանի որ հնարող ուժը դեռ քունի մէջ է։

Այդ տարիքին մէջ տղան ի՞նչ կրնայ ընել. բռնել, հրել, դիտել, քաշել, գլորել ու այս ամենը կրնայ ընել Ա. եւ Բ. Նուէրներ-

*րով՝* Ֆրէօպէլ *իր նախնական դաստիարակութեան սկզբունքները փոխ առած է տղոց բնութենէն. իր բոլոր խաղալիկներն այդ բնութեան ճշմարիտ պահանջքին ծնունդն են։ Անոնց մէջ կը տեսնուի մեծ մանկավարժին խորին ծանօթութիւնը տղոց հոգւոյն, նուրբ զննութիւնը և մանկավարժական զարմանալի ձիրքերը։*

*Մանկապարտէզ յաճախելէն առաջ տղուն գլխաւոր պահանջներն են* շարժում *և* արտաքին զգայարանքներու *մարզանք։ Ահա թէ ինչու կուտանք անոնց բրդէ գունաւոր գնդակներ, որոնք կը մարզեն տեսանելիքն ու շօշափելիքը. փայտէ գունդը, գլանն ու խորանարդը, որոնք իրենց հանած ձայներով կը կրթեն լսելիքն, երբեւան կը բերեն առարկաներու ձեւն ու ծաւալը կը ծանօթացնեն շարժմանց տեսակներուն, կը համաչափեն ձեռքին շարժումը՝ տեւողութեան հետ։*

*Բայց ահա հասած է ժամը, երբ տղոց* մտապատկերներուն *պաշարն հարստացած է, անզուսպ փափաք մը ունին ամեն բան քննելու, զննելու, կը կտրեն իրենց պուպրիկին գլուխն, առարկային ներքինը դիտելու հետաքրքրութենէն մղուած։ Այս հասակի տղոց* Ֆրէօպէլ *կ'ուտայ իր Գ. նուէրը, որ խոշոր խորանարդ մըն է 8 խորանարդիկներու վերածուած՝ աջէն ձախ ու վերէն վար կտրուածքներով։ Այս նուէրը կը հասնի ճիշդ այն ժամուն՝ երբ արթնցած է տղոց հնարող, ստեղծող կարողութիւնը։*

*Տղան տուփէն կը հանէ խորանարդը, ու իսկոյն մանր մասերու կը բաժնուի։ Իր առաջին փափաքը կ'ըլլայ զանոնք միացնել ու կը տեսնէ որ խորանարդները միանալով զանազան առարկաներու ձեւեր կ'առնեն. տղան անզգալի կերպով ստեղծելու ճամբան կը մըտնէ։ Երբ տղոց դիտողութեան հորիզոնը ընդարձակուի տակաւ, կ'ըստանան Դ. նուէրը, որ նոյնպէս մեծ խորանարդ մըն է, բայց տարբեր կերպով կտրատուած ու 8 աղիւսներու վերածուած է։ Այս աղիւսներով շէնքերն աւելի սիրուն և չրջագծերն որոշ կը պատկերանան։*

*Աւելի վերջը պիտի բացատրենք* Մանկական Պարտէզի *նուէրներուն պաշտօնը տղայոց դաստիարակութեան գործին մէջ, մենք այստեղ չեշտել ուզեցինք միայն նոր մեթոտին այն բնորոշ յատկութիւնն, որով մէն մի զբաղում հիանալի ճշդութեամբ ու ժամանակին կուգայ աստիճանաբար լրացնել մանուկ բնութեան պահանջները՝ անոր զարգացման յաջորդական փուլերուն մէջ։* Ֆրէօպէլ *իր մեքենական զբաղմանց մէջ ալ նոյն բանին ուշադրութեան առած է։*

Իր առաջին վեց նուէրները թէեւ ունին ձեւի զանազանութիւն, թէեւ զննութեան ու բաղդատութեան առատ նիւթ կը մատակարարեն, սակայն չ'են կրնար նպաստել զարգացումին այն ամեն կարողութեանց, զորս բնութիւնը մթերած է տղոց հոգւոյն խորը. ուստի իբր շինուածանիւթ կ'ընդունի նաեւ թուղթը՝ փայտէն անհամեմատ աւելի ճկուն ու կերպընկալ նիւթ մը։ Թղթով աւելի շօշափելի ու բազմաթիւ ձեւերու տակ տղայք երեւան կը բերեն միջավայրի առարկաները։

Ըսողներ կան թէ՝ Ֆրէօպէլ Գերման մանկավարժ մը ըլլալով՝ իր դրութիւնը Հայ տղայոց դաստիարակութեան չի յարմարիր, թէ՝ անիկայ անձկամիտ դրութենամոլ մըն է, իր տուած զբաղումները զուտ մեքենական են եւ կամ միայն արտաքին տպաւորութեանց զանազան զգայարանքներու զարգացումին շուրջ կը դառնան։

Այս առարկութիւնները ջրելու փաստեր չ'են պակսիր։

Ֆրէօպէլ իր մէթոտին առաջնորդ ունի միայն այն օրէնքները, որոնք տղուն մէջ ծնունդ առնող գործունէութիւնը կը յատկանշեն, ինչ ազգի ալ պատկանի անիկայ։ Տղան կ'սկսի դիտել, շօշափել, շատախօսել, կայտռել ու խաղալ, ու ահա հարց մը կը ծնի մեր մէջ, ո՞ւր կը դիմեն բոլոր այս շարժումներն, ի՞նչ ուղղութիւն պէտք է տալ անոնց, ինչե՞ր կը խօսի անոնց մէջ մարդկային բնութիւնը։

Ֆրէօպէլի գլխաւոր ծառայութիւնն այն է, որ մեզի կ'ուսուցանէ օգտուիլ ամենապարզ նիւթերէ, նիւթեր՝ զոր ամենուրեք կրնանք գտնել, կ'ուսուցանէ թէ՝ իւրաքանչիւր վիճակի մէջ ի՞նչ ընթացք պիտի բռնենք։

Մեծ մանկավարժին միտքէն չ'էր անցներ թէ՝ կրնան գտնուիլ կարգ մը ապիկար դաստիարակներ, որոնք իրենց համար սրբազան պարտք սեպեն, գործածել ճիշդ այնպիսի խորանարդներ, զորս ինքը գործածած է, խօսիլ այն նիւթերուն վրայ, երգել՝ այն երգերը զորս ինքը խօսակցութեան առարկայ ըրած է ու երգած։ Անիկայ մեզի ցոյց տուաւ մշակելի նիւթը, որով տղուն ստեղծող երեւակայութիւնը պիտի գործէ։ Ան կը պահանջէ զգայարանաց բազմակողմանի զարգացումը, չ'ուզեր որ ստրկօրէն իրեն հետեւինք, չի մերժեր ուրիշ խաղեր ու խաղալիկներ, որոնք յաճախ աւելի օգտակար կրնան ըլլալ։ Եթէ նոյն իսկ Գերմանիոյ մէջ նոր դրութեան ամեն մէկ մասը օգտակար չի համարուիր դաստիարակութեան, որ-

քան աւելի ընտրողութիւն ունեցած են Հայ դաստիարակներ։

Զբաղմանց ու զրոյցներուն, ինչպէս և երգերուն նիւթը Ֆրէօպէլ ժողվեց իր երկրին մէջ ռամկական անսպառ աղբիւրներէն, սակայն զանոնք յարմարցուց իր մէթոտի պայմաններուն և տղայոց մտքի հասողութեան պահանջներուն։ Այս նիւթերը ժողվելու համար անիկայ առաջ երկար տարիներ թափառեցաւ գիւղէ գիւղ, մտաւ ամենէն խոր ընկած խրճիթները, ուրա մտերմութեամբ կապուեցաւ գիւղացի մամիկներուն ու տղոց հետ, որպէսզի հիմնովին ուսումնասիրէ այն նիւթը, որ դարերու ժառանգութեամբ անցած էր. սերնդէ սերունդ։ Դարեր ու դարեր Գերման մայրեր այդ նիւթերով սնուցած էին իրենց պզտիկները։ Ֆրէօպէլ շատ աշխատեցաւ մաքրելու, զատելու անհարկի նախապաշարումները և անոր հաւատալիքներու այդ կոյտը, անկէ զատելու համար մատաղ մտքերու սննդարար կաթը։ Մեր մէջ այդ գործը պահուած է բնագաւառի դաստիարակներուն, անոնք են որ մեզի պիտի մատակարարեն մանուկ միտքի դիւրամարս սնունդը — ռամկական խաղեր, երգեր, պատմութիւններ, զրոյցներ, հեքեաթներ, հանելուկներ, վերջապէս այն ամենը որով Հայ մայրը կը սնանէ իր մանկիկը։

Որքա՜ն պիտի զարմանար արդեօք Ֆրէօպէլ, տեսնելով որ Հայ տղաք կը դաստիարակուին Գերմանական երգերու խղճալի թարգմանութիւններով, այն տարիքին մէջ երբ մօր կաթէն տարբեր սնունդ մը չի կրնար առնել։

Հապճեպով սկսուած գործէ մը այսքան կրնայինք սպասել։ Արդար ըլլալու համար պէտք է ընդունինք որ մեր մէջ Մանկական պարտէզի գործը ա՛յլայլ ձեւերով հաստատուեցաւ։ Նոր դրութեան կեղեւն էր որ մեզի մեծարեցին և մենք այդ կեղեւը ոսկեղօծ զարդարեցինք, երբէք չ՚ըմբռնելով թէ ներքինը փտած է։

Ֆրէօպէլ որդեգրեց Պէսթալոցցիի դրութիւնն և զայն իր պարտէզներուն յարմարցուց։ Իր օրով թէև մանկավարժական գիտութիւնն արթնցած էր նոր կեանքի ու գործունէութեան թափով, սնած՝ Պէսթալոցցիի առողջ գաղափարներով, սակայն մատղաշ տղայոց դաստիարակութիւնը մեծ ուշադրութեան առարկայ եղած չ՚էր ու անոնց դաստիարակութեան միակ վայրը խաղի դպրոցն էր։ Ֆրէօպէլին պահուած էր նոր հորիզոն մը բանալ նախադպրոցական դաստիարակութեան։ Ամեն նոր գործի մէջ կրնան մուտ գտնել յետսամիտ և ձեւ-

ւամոլ գաղափարներն, նոյնը վիճակեցաւ նաև նոր մեթոտին։ Մեծ մանկավարժը շատ լաւ գուշակած էր ասի և իր մէկ գործին մէջ կը յանձնարարէ «հետեւիլ մեթոտի ոգւոյն եւ ոչ թէ ձեւին»։

Իր դարուն Մանկավարժութիւնը դասական էր և փորձառա-կաններ ու գիտուններ չ'էին զիջաներ խոնարհիլ մինչև մանուկ կեանքը։ Ֆրէօպէլ բնութիւնն ունեցաւ իրեն առաջնորդ, անկէ առաւ իր նիւթն և առակներուն ու բարոյախօսութեան տեղ տուաւ մի-ջակորեարի աշխատութեան գաղափարը։ Իրեն սկզբունք ընտրած է հաճելի ու դիւրատար աշխատութիւնն որ սքանչելի աստիճանաւո-րումով մը կը վարժեցնէ տղան համբերութեան և ապագայ լուրջ գործունէութեան։

Որքան յայտնի է՝ գործնականին մէջ Ֆրէօպէլ հակառակ էր իմաստակ ու ձեւամոլ ուղղութեան, այն ժամանակներն երբ դեռ իր մանկավարժական դաւանումները կազմուած չ'էին, երբ մարմին առած չ'էր Մանկական Պարտէզի նոր գրութիւնը։ 1816ին հիմնուե-ցաւ Ֆրէօպէլի որբանոցը։ Հաստատութեան բարոյական կազմը այ-ցելուն այն տպաւորութեան տակ կը թողուր, որ հոն ձեւամոլու-թիւնը գոյութիւն չ'ունի։ Դաստիարակներ ու սանունք բարեկարգ ընտանիք մը կազմած էին, ջերմ համակրութեամբ կապուած, գի-տութեան ու մարդկային լաւագոյն կեանքի անկեղծ հաւատքով։

Անկէ 20 տարի վերջը բացուեցաւ առաջին Մանկական Պար-տէզը։ Տիոտէրվէկ որուն վկայութիւնը ամեն կասկածէ վեր է, ան-սովոր գովեստով կը խօսի առաջին անգամ այցելած Մանկական Պարտէզին ու անոր հիմնադրին վրայ։ «Ֆրէօպէլի մէջ, կըսէ, առա-ջին անգամ տեսայ ճշմարիտ մանկավարժին կատարեալ մարմնացու-մը»։ Այս գովեստը Ֆրէօպէլի անձնական գործունէութեան կը վե-րաբերի։ Իր մէթոտին իմաստասիրութիւնն և քանի մը շարադրու-թեանց մէջ պարզած հայացքներն արուեստ և իմաստակութիւն կը բուրեն։ Սկզբունքները անվիճելի են, բայց մանրամասնութիւնք՝ ինչ-պէս կեղծ զգայնութիւնն որով տղոց երգել կուտայ երկրաչափական ու թուաբանական ճշմարտութիւններ, աշխատութեան քաղցրութիւնն և արտասուախառն վերաբերումը բնութեան, ծիծաղ կը շարժեն։

Սակայն եթէ անհատի մը գործին թերի ու թոյլ կողմերը մի-այն փնտռենք, հանճարը այլ եւս գոյութիւն չունենար մեզի համար։ Ոչ մէկ մարդ, որքան ալ արտակարգ ձիրքերով օժտուած ըլլայ,

չի կրնար խուսափիլ ժամանակի ու միջավայրի ազդեցութենէն և մենք անիրաւած կ'ըլլանք եթէ դարուն ակար կողմերուն համար, ուրանանք այն անժխտելի ծառայութիւնները, զոր այդ մարդիկ մատուցած են մեզի։ Այսպէս ալ Ֆրէօպէլի գործը, որ մեծապէս նպաստած է մանկավարժութեան, իր թերի կողմերն ունի, որոնք ժամանակին ազդեցութեան արդիւնքն են։ Մանկավարժական դրութիւն մը միայն այն ժամանակ սխալանքէ զերծ կրնայ ըլլալ, երբ կը յենու հոգեբանական օրէնքներու։

Քառասնական թուականներուն հոգեբանութիւնը ընազանցական էր, որ յաճախ սխալ մեկնութիւններ կուտար հոգեկան երեւոյթներուն։ Նոյն ժամանակները մարդոց մէջ տեսնուած տարբերութիւնը միջավայրին ու դաստիարակութեան կը վերագրուէր բոլորովին։ Տաղանդ, ձիրք, առաքինութիւն, հանճար կարելի էր ձեռք բերել խնամոտ դաստիարակութեամբ։ Այն դարուն համար մանկան հոգին tabula rasa մըն էր, որուն վրայ դաստիարակը կրնար գրել ամեն բան։ Ուստի մանկավարժական գաղափարներու այս խեղճութեան մէջ աւելի կը փայլի Ֆրէօպէլի մեծ հանճարն, եթէ նկատողութեան առնենք անոր խորին ծանօթութիւնը մանուկ հոգիներու, թէև անտեղեակ՝ սրտի հոգեբանութեան։

Եթէ մէկ կողմ ձգենք Ֆրէօպէլի մութ, վերացական բացատրութիւններն, այն համոզման կուգանք որ նոր մեթոտն առողջ սկզբունքներու վրայ հաստատուած է և մեծապէս կը նպաստէ մանկանց բարոյական, իմացական և ֆիզիքական դաստիարակութեան։

Ֆրէօպէլի բոլոր զբաղումները, մեքենականներն իրենց խօսակցութիւններով և մարզականներն իրենց երգերով կը դիմեն հոն, ուր կուզեն հանիլ արդի մանկավարժութիւնն ու հոգեբանութիւնը տղոց դաստիարակութեան գործին մէջ, այսինքն՝ համերաշխ զարգացումը տղայոց բարոյական և իմացական կարողութեանց։

Նոր դրութեան թերի կողմերէն մէկն է արուեստականութեան չափազանցութիւնն, որմէ զգուշանալ պարտին Հայ դաստիարակներ։ Դաստիարակ մը Ֆրէօպէլի մեթոտը գործադրելէն առաջ, ինքնին մշակելու է անոր մեքենական աշխատութիւնները։ Ասի շատ կարեւոր է, որպէսզի զանազան նկարներու կոյր հետեւող մը չ'ըլլայ և ձեռք բերուած փորձառութեամբ տղոց գործը աւելի դիւրին, արագ ու գեղեցիկ արտադրուի։

Ֆրէօպէլ իրեն առաջնորդ ընտրած է մանկավարժական մեծ սկզբունք մը — դիւրինէն՝ դժուարը, պարզէն՝ բաղադրեալը, ծանօթէն՝ անծանօթը։ Մեքենական զբաղմանց մէջ չափազանց պահանջկոտութիւնը լաւ չէ, որովհետեւ տղան կ'ստիպուի իր կարողութենէն վեր ճիգեր թափել եւ մեքենականութեան լուծին տակ կամ անյաջողութենէ կը վհատի։

Երբ տղայք վերջացնեն իրենց մանր պարտքերն աւարտեն խաղը՝ որուն մէջ առիթ ունեցան բնութենէն զանազան տպաւորութիւններն ստանալու, ու դեռ այնքան յոգնած չեն որ գործունէութիւնը դադրի, դաստիարակը կրնայ տալ Ֆրէօպէլի այս կամ այն զբաղումը իրեն զուգընթաց երգերով ու պատմութիւններով։ Զբաղումը միշտ պիտի վերջանայ մարզական խաղով մը։ Խաղին մէջ բաւական զուարթանալէն վերջը կարելի է առաջարկել հանելուկներ, բանալ օգտակար խօսակցութիւններ, ամէն պարագայի մէջ միջավայրն աչքի առջեւ ունենալով։

Ֆրէօպէլի դրութեան քանի մը թերութիւնները պատճառ եղան ժամանակ մը ետ ձգելու անոր լուսամիտ եւ օգտաշատ գաղափարներուն ծաւալումը։ Դրութեան առողջ սկզբունքները իւրացնելու, անոնց խորութիւնն ու նշանակութիւնը չափելու համար անհրաժեշտ է ուսումնասիրել մէթոտը, գալով ընտրողութեան, այսինքն էականն՝ անկարեւորէն, օգտակարը՝ վնասակարէն ու անյարմարէն զատելու համար, անհրաժեշտ է ունենալ իմացական զարգացում եւ քննադատական ոգի, ինչ որ յաճախ կը պակսի մեր վարիչներուն։

Մանր տղոց դաստիարակութեան նուիրուող աղջկանց համար շատ կարեւոր է ունենալ դասընթացք մը, ուր գործնական դաստիարակութեան զուգընթաց կարողանային ուսանիլ հետեւեալները։

1. Մարդակազմութիւն
2. Բնախօսութիւն
3. Առողջաբանութիւն
4. Հոգեբանական ու մանկավարժական կարեւոր գիտելիքներ
5. Ֆրէօպէլի մէթոտն ու զբաղումները
6. Պատմութիւն մանկավարժութեան
7. Բնագիտութիւն
8. Գծագրութիւն
9. Կաղապարում
10. Մարզական խաղեր
11. Երգ եւ Ձայնագրութիւն



# ՄԱՅՐԵՆԻ ԴԱՍՏԻԱՐԱԿՈՒԹԻՒՆ



### ՏՂՈՑ ԳԻՏԱԿՑՈՒԹԻՒՆԸ ԱՐԹԸՆՑԱԾ ՕՐԷՆ ՄԻՆՉԵՒ 3—4 ՏԱՐԵԿԱՆ ԸԼԼԱԼՆԻՆ

*Ինչպէս տեսանք Ֆրէօպէլ տղոց դաստիարակութիւնը կ'սկսի անոնց գիտակցութիւնը արթընցած օրէն իրեն նպատակին գործածելով նորարծարծ ուշադրութեան տենչը ու արտաքին զգայարանքները։*

*Գոյութեան առաջին ամիսներուն մէջ նորածինը իր շարժումներով երեւան կը բերէ գործունէութեան հակումը։ Ֆրէօպէլ անուշադիր չ'է այս երեւոյթին և միջոցներ ձեռք կ'առնէ այդ գործունէութեան յագուրդ տալու համար։*

*Կրնայ նկատուիլ թէ՝ տղան երբ մեծնայ առիթներ չի պիտի պակսին զգայարանքները զօրացնելու, սակայն գէթ օրօրոցին մէջ հանգիստ թողունք զանի։ Արծիւը բնաւ արուեստական միջոցներու չի դիմեր ձագերուն տեսողութիւնն ու ճարպիկութիւնը զօրացնելու համար և սակայն ժամանակին մարդոց տեսութենէն ծածկուած հեռաւորութեանց վրայ, անոնք կրնան տեսնել պզտիկ վառեակը, նետի պէս կը խոյանան ու կը յափշտակեն։ Այս դատողութիւնը կրնայ ճիշդ թուիլ, սակայն մտածելու է որ կարգ մը կենդանիներ, մանաւանդ ստորին դասերուն վերաբերողները, իրենց աշխարհ եկած օրերնին իսկ կը տեսնեն, կը լսեն կը շօշափեն աւելի լաւ քան նորածին մանուկը, տկար ու անպաշտպան։ Այս տարբերութեան պատճառներով յայտնի են։*

*Արտաքին զգայարանքները կարգ մը կենդանեաց, որոնք իրենց գոյութեան առաջին օրն իսկ կը գործեն, համապատասխան զարգացում մը ունին, մինչդեռ մարդուս զգացումներն ու այդ զգացմանց գործիները շատ տկար մնացած են և կրնան զօրանալ ու զարգանալ միայն նպատակայարմար վարժութիւններով։*

*Արդ՝ Ֆրէօպէլ այս գաղափարէն առաջնորդուած նորածին մանկան օրրանին վրայ կը կախէ գունաւոր գնտակ մը։ Ֆրէօպէլի ամէն մէկ գործին մէջ իմաստասիրական հիմ մը կը գտնենք։ Նոյնն է նաև այս խաղալիկին համար։ Գնտակը կլոր է, իր ձևը տիեզերքի մէջ տիրող ձևն է։ Բոլոր երկնային մարմինները կլոր են, կլոր*

ձեւը կը բոլորէ ամէն ինչ նաեւ գործարանաւոր աշխարհին մէջ սաղմ-ձուէն սկսեալ։ Այս պատճառաւ մեծ մանկավարժն իր առաջին խաղալիկին կլոր ձեւը կուտայ։

Մանր տղոց կլոր ձեւով խաղալիկ տալը բանաւոր է, բայց ո՛չ այն պատճառաւ որ տիեզերքի մէջ այդ ձեւը տիրող է կամ թէ՝ սաղմնային ձուն կլոր չրջագիծ ունի։

Ձուին հետ տղան կ'սկսի որոշել նաեւ գոյնն եւ որովհետեւ բնութեան մէջ, օրինակի համար ծիածանին վրայ 7 գոյն կը տեսնուի. (կարմիր, նարնջագոյն, դեղին, կանանչ, կապոյտ, լեղակագոյն, մանիշակագոյն) Ֆրէօպէլ 7 գոյնով գնտակներ կուտայ իբր առաջին խաղալիկ, զոր կը կոչէ իր Ա. Նուէրը(1):

Թէեւ ծիածանի գոյները 7 տեսակ են սակայն Ա. Նուէրի տուփին մէջ միայն 6 գնտակ կը տեսնուի, որովհետեւ կապոյտն ու լեղակագոյնը միեւնոյն գոյնին տարբեր երանգներն են։

Նախ կ'առնենք ո և է գոյնով գնտակ մը և համագոյն երիզով մը կը կախենք տղուն օրրանին վրայ։ Ճշդիւ որոշել կարելի չ'է թէ երբ է կախելու ժամանակը, բայց պէտք է միջին ժամանակ մը որոշել։ Երեք չորս չաբաթական տղուն աչքին եթէ մատս մօտեցընեմ չի թարթեր, կամ եթէ մութ ժամանակ լապտերը սենեակին մէկ կողմէն միւսը տեղափոխեմ աչքին ուղղութիւնը չի փոխեր. ասիկայ կը ցուցնէ որ տղուն տեսանելիքը դեռ չատ տկար է։ Պէտք է քիչ մը ժամանակ հանգիստ թողուլ և աչքը լուսոյ առատ հոսանքի մը ենթարկելէ զգուշանալ, որպէս զի չի վնասուի։ Իսկոյն ժամանակ մը ետքը տղան կ'սկսի անթարթ դիտել ձեր դէմքը, կը ժպտի, ոտքերուն ու ձեռքերուն չարժումները կ'արագանան թէեւ անորոշ ու աննպատակ։ Այդ տղուն քնացած ժամանակը օրօրոցէն կախեցէք գունաւոր գնդակը և դիտեցէք։ Ահա արթնցաւ, աչքերն սկսան չրջիլ անորոշ, յանկարծ կանգ առին գնտակին վրայ, տղան անխօս կը դիտէ, ուշադրութիւնը կը կեդրոնացնէ այդ նորերեւոյթ առարկային վրայ։ Յանկարծ կը թօթւըռուի ձեռքերով ու ոտքերով, կարծես ամբողջ մարմինը կ'ուզէ առաջ մղել կը ձայնէ ու աչքերով կը գգուէ գնդակը։ Առաջին օրը հազիւ թէ վայրկեան մը կ'զբաղի անով, երկրորդ օրը ալ աւելի և այսպէս օր ըստ օրէ գնդակին զբաղումը կ'երկարի և ձեռքերը կ'սկսին օգնութեան հասնիլ աչքերուն,

(1) Տես Տախտակ Ա.

Տղան տակաւ կը վարժուի գնդակը բռնելու. եթէ ձեռքէն ելնէ կը տատանի այս ու այն կողմը, այդ պարագային տղուն ակնարկն առաջուան պէս անորոշ ու տարտամ չ'է, այլ կը հետեւի գնտակին շարժումներուն։

Երկու երեք ամսական եղած ժամանակը տղան կը վարժուի գնտակը բռնել երկու ձեռքերով, հրել ու վերստին ձեռք բերել։

Լաւ կ'ըլլայ որ առաջին անգամ կապոյտը կամ կանանչը կախենք, որովհետեւ այս գոյները տկար աչքերու համար շատ հաճելի են։ Կարմիր գոյնին ազդեցութիւնը խիստ է, ուստի պէտք է ամենէն վերջը կախուի։ Գնտակներ կախելու համար որոշ ժամանակ մը սահմանուած չ'է, սակայն կրնայ երկարիլ այնչափ, որչափ որ հաճոյք կ'ազդէ տղուն։ Երբ լաւ բռնելու վարժուի տղան, կարելի է մէկէն տեղ երկու երեք հատ կախել։ Վերջապէս կը հասնի այն ժամը երբ տղան կրնայ նստիլ մօր գիրկը եւ թաթիկներն անոր երկարել։ Այդ ժամանակ 5—6 ամսական է։ Ֆրէօպէլ իր գնտակներով կ'սկսի զանազան վարժութեանց տղուն մկանունքը եւ լսելիքը զարգացնելու համար, պահանջելով որ մայրեր խաղան, ու երգեն իրենց տղոց հետ։ Այդ խաղերուն ու երգերուն առատ մթերքը կը գտնուի իր «Մայրենի գրոյցներուն» մէջ։ Այս հասակի տղայոց համար Ֆրէօպէլի պատուիրած բոլոր վարժութեանց մէջ կը տեսնուի տարօրինակութիւն, հասակին անհամապատասխան գաղափարներ, բռնազբօսիկ զարգացում, աւելորդ կարգապահութիւն, թէեւ լուրջ խորհուրդներ ալ չ'են պակսիր։

Տեսնենք նախ գնտակին վարժութիւնները։ Ֆրէօպէլ բազմաթիւ խաղեր ունի, որոնց մէջ անսովոր աստիճանաւորումով մը կը ծանօթացնէ գնտակին շարժումները. — առաջ, ետ, վեր, վար, հոս, հոն, մօտ, հեռու, բարձր, ցած, շուրջ, եւլն.։ Ապա կը ծանօթացնէ գնտակին դիրքերը տարբեր առարկայի մը նկատմամբ, տուփին վրայ, տուփին տակը, տուփին աջ կողմը, ձախ կողմը, տուփին մէջը, դէպի ինծի, դէպի քեզի եւլն. մէկ խօսքով անսովոր ճիգ մը կը թափուի տղուն սորվեցնելու համար ամէն տեսակ նախադրութիւններ ու մակբայներ։ Այս շարժումներուն իւրաքանչիւրն իր երգն ունի, զոր կ'երգէ մայրիկը տղուն ծանօթութեանց պաշարը աւելցնելու համար։

Կ'ընդունինք թէ այդ հասակի տղոց գնտակներ տալը, մանա-

ւանդ համազոյն երիզներով կապուած գնտակներ, որպէս զի տղան խաղայ եւ այդ խաղերուն մէջ մարմնոյ զանազան շարժումներուն ծանօթանայ առանց մեր կողմէ միջամտութեան, գէշ չ'է. բայց այդ վարժութեանց «[illegible]» ընթացք մը տալ, ստիպել որ մեր գծած ճամբէն քալէ, նախ ծանօթանայ դէպի վեր շարժումներուն, ապա դէպի վար, կողմնակի եւն., բոլորովին անտեղի է: Մտածեցէք որ այս ամէնը պիտի սորվեցնենք 5—6 ամսական տղոց, որոց համար երգուած երգերուն մէջ անըմբռնելի գաղափարներ կը վխտան: Զենք ուրանար թէ՝ թանձրացեալին հետ վերացեալ գաղափարները լուրջ կերպով ուսումնասիրուած են, բայց առոնք աւելի ուշ ժամանակի կը յարմարին, երբ տղան կը վարժուի խօսիլ եւ լաւծն ըմբռնել: Վերջապէս գիտնալու է թէ խիստ «[illegible]» վարժութիւնները վարժարաններու յատուկ են եւ երբէք չ'են յարմարիր նախադպրոցական շրջանին: Նոյն իսկ այն տեղ աւելի բնական պիտի ըլլար առարկաներու փոխադարձ դիրքը որոշել տղուն շուրջը գտնուած մարմիններով եւ առիթը պատահած ժամանակ հարցընելով՝ ի՞նչ կայ գլխուդ վերեւը, աջ կողմը, ձախ կողմը, ետեւը, առջեւը եւն. եւ այս ամէնն պէտք բնադատումի, ո՛չ իբր դաս, այլ իբր զբօսանք:

Ասոր հակառակ, տղուն ծնած օրէն Ֆրէօպէլ կ'սկսի, գերմանական հին սովորութեամբ ու վարդապետօրէն ընդունիլ տալ տպաւորութիւններ, ո՛չ ինքնադատ այլ գծուած կանոններու համաձայն:

Այս ընթացքով դաստիարակներ տարօրինակ վիճակ մը կ'ունենան: Մարդուն խնդալը կուգայ երբ երեւակայէ որ դաստիարակը կխսամեայ տղան զուարճացնելու զբաղած վայրկեանին պիտի մտածէ ու հաշուէ թէ ո՞ր շարժումը սորվեցնէ առաջ, ո՞ր քերականական բառը եւ ոգեւորուած այս «[illegible]» գործէն, պիտի երգէ զգայնիկ երգեր, ուր վսեմ ու բարձր գաղափարներ իրարու կը յաջորդեն:

Երբ տղուն մկանունքը տակաւ առ տակաւ կը զօրանան, ու կ'սկսի փորսալ կամ ոտքի վրայ քալել, Ֆրէօպէլ գնտակի խաղերուն կը միացնէ նաեւ մկանոնց խաղերը:

Գնտախաղը որ արդիւնաւոր եղած էր 2—3 ամիս, այլեւս պէտք է թողուլ, յաջորդ շրջանին աւելի օգտակար կերպով գործածելու համար, որովհետեւ տղուն ակռաները սկսած են ծայր տալ եւ լինտերուն քերըտուքը անցնելու համար շարունակ բերանը կը

տանի բերէ գունտը, որուն մազմզուքները հաղ և փոխունք կը պատճառեն. այս ժամանակիս աւելի կը յարմարին մկանանց խաղերը։ Մկանանց մարզանքը Ֆրէօպէլ կ'սկսի 3—4 ամսականէն և զանազան վարժութիւններ կը պատուիրէ։ Օրինակի համար, կ'առաջարկէ որ, մայրը տղան բարձին վրայ դնէ և երկու ձեռքերով իրանին վերի մասը բարձրացնէ, նոյն գործողութիւնը կրկնէ նաև ոտքերուն համար։ Այս վարժութիւնը ողնաշարը ամրացնելու կը ծառայէ։ Կը պատուիրէ տղան բարձին վրայ կանգնեցնել և ոտքերով համաչափ հարուածներ տալ բարձին, որոնք ձիթահանքին մէջ չուչման ծեծուող գլաններուն դերը պիտի կատարեն եղն.։

Բոլոր այս վարժութիւնները Ֆրէօպէլ կը համեմէ երգերով, որոց մէջ երևան կուգան, մերթ մայրական գորովը, մերթ մշակին աշխատութեան քաղցրութիւնը եղն.։ Թէև տղայոց այնչափ հասկանալի չ'են այս երգերը, բայց ականջնին լեցնելու համար, լաւ կ'ըլլայ որ մեր միջավայրէն առնուած նիւթերու վրայ մանկական երգեր յօրինուին։ Ֆրէօպէլի մկանական բոլոր վարժութիւնները լուրջ ուսումնասիրութեան արդիւնք են և շատ օգտակար՝ մանր տղոց։ Աւելի բազմազան ու նպատակայարմար են մկանային այն մարզանքները, զորս Ֆրէօպէլ չինած է նստելու վարժ տղայոց համար։

Ասոնց համար ո՛չ միայն ոտքերու և ձեռքերու, այլ ամբողջ մարմինին զանազան մասերը զօրացնելու սահմանուած երգեր ու խաղեր ունի։

Նստող տղան այլևս լաւ կը հասկնայ մեր խօսքը, ուստի մայրերը վարժութեանց զուգընթաց երգերը փոխ առնելու չ'են Ֆրօէպէլէն, վասն զի անոնց մէջ գերմանական այնպիսի նրբութիւններ ու իմաստասիրական հայեացքներ կան, որ 12—13 տարեկան տղայոց անգամ անհասկանալի են։

Ասկէ զատ մեր կեանքին խորթ զգայնութիւնը, այդ երգերուն ուղն ու ծուծը կը կազմէ։

Յիշենք այստեղ այդ խաղերէն քանի՛ մը հատը։

ԴՐՕՇ. Խաղին նիւթն է ծխնելոյզին դրօշը։ Տղայք մերթ ձախ և մերթ աջ ձեռքերով կը ձեւացնեն անոր շարժումները։ Գերման տղոց համար այդ խաղը արդարև նշանակութիւն ունի. անոնց մէջ յետին խրճիթն անգամ ծխնելոյզին վրայ դրօշ մը ունի, այնպէս որ

*դեռ դուրս չ'ելած տղան կրնայ զայն դիտել իր սենեակին պատուհանէն, Այս խաղը մեր կեանքէն առնուած ուրիշ նիւթի մը վրայ ձեւուելու է։*

**ԹԻՔԹԱՔ**։ *Տղայք ճօճանակին շարժումները կը կատարեն աջ ու ձախ թեւերով։*

**ԴԱՇՆԱԿ**։ *Դաշնակահարութիւն մատներով։*

**ԱՂԱՒՆԻՆԵՐ**։ *Թռչունները կանչել թաթիկներով։*

**ՄԱՏՆԵՐՈՒ ԽԱՂ**։ *Մատները ընտանիքին անդամները կը ներկայացնեն։ Անոնց անունները կը յիշուին, թիւը կը համրուի ելն։*

**ԼՈՒՍԱՍՏՈՒԵՐ**։ *Արեւին ճառագայթներուն առջեւ հայելի մը կը շարժեն լուսաստուերը ցուցնելու համար։*

**ԹՌՉՆԻԿՆԵՐՈՒՆ ԲՈՅՆԸ**։ *Մատներով թռչնիկին բոյնը կը ձեւացուի, որուն մէջ բթամատերը նախ ձուն՝ ու ապա ձուէն ելլող ձագերը կը ներկայացնեն։*

*Մենք ուշադրութեան պիտի առնենք ասոնցմէ մէկ քանին եւ պիտի աշխատինք յարմարցնել մեր կեանքին։*

**ԾԻՒ ԾԻՒ**։ *Ձեռքի մկանները զօրացնելու համար մեր մէջ մանկական սիրուն խաղ մը ունինք։*

Ծիւ ծիւ մասնոցիկ,
Սեւ ագռաւը բռնեցինք.
Իւղով մեղրով տապկեցինք,
Սանամարին կերցուցինք.
Թռռ.....

*Տղան երկու ձեռքերը իրարու կը միացնէ, այնպէս որ միայն մատներուն վերի մասերը իրար հպին։ Տղան կ'երգէ ափերը մօտեցընելով ու հեռացնելով. վերջին բառին երկու ձեռքերը իբր թռչուն վեր կը թռչին ու կը հանգստանան գլխուն վրայ։*

**Ֆրէօպէլ** *մկանանց խաղ մը ունի, ուր մայրիկը տղուն ձեռքը կը բանայ եւ ափին մէջ երկու չեղակի գիծ քաշելով հաշիւ մը կուտայ ու կ'երգէ։*

Փայտ մը դրի ես երկայն,
Ապա փայտ մը կարճ ու լայն.
Գամ մը զարկի թիք, թաք, թաք,
Խաղս ըլլայ թող անքակ:

*Այս երգին մէջ տղան կ'ստանայ ատաղձագործին աշխատութեան գաղափարը։ Ասոր տեղ կրնանք գործածել գաւառային խաղ մը ուր ձեռքին բոլոր մատները մաս ունին։*

Լեռնէն իջաւ Նապաստակ,
Նստաւ ուռի ծառին տակ.
Աս բռնեց.
Աս մորթեց.
Աս սկսաւ ուտել խաղալ,
Փսիկն ըսաւ, տո՛ւր ինծի ա՛լ։

*Տղուն ձեռքը բաց է, մայրը ցուցամատը կը սահեցնէ բոյթ մատին վրայէն մինչև ափին կեդրոնը ու թեթև մը կը ճնշէ։ Գ. տողին՝ ցուցամատը կը ծալէ. Դ.ին՝ միջամատը. Ե.ին՝ մատնեմատը։ Փիսիկին անունը տրուած ժամանակ ճկոյթը բռնելով կը շարժէ այս ու այն կողմ։*

*Ասոր նման ունինք նաև*

Հայրիկը՝ բոյթ մատ, ոչխար մը գնեց,
Մայրիկը՝ ցուցամատ, զատիկին մորթեց,
Եղբայր՝ միջամատ, քերթեց ու մաքրեց,
Քոյրիկ՝ մատնեմատ, համեմեց եփեց,
Փոքրիկ ճկոյթը, նե՛մ, նե՛մ, նե՛մ, ծամեց(1):

*ԹՌՉՆԻԿԻՆ ԲՈՅՆԸ։* Ֆրէօպէլ *այս երգին մէջ կը գովէ Աստուածային իմաստութիւնը, որ սորվեցուցած է թռչունի մը պէս մանր արարածին, շինել իրեն տունը։ Կը սորվեցնէ թէ բնութիւնն ամբողջ ու մարդիկ կ'առաջնորդուին այդ օրէնքներով։*

*Թէև երգը անհասկանալի սակայն խաղը չափազանց հաճելի է։*

(1) *Տես «Մանկական Պարտէզ» Պալլապան։*

*Այս խաղին համար կը դնենք հետեւեալ երգը, որ ժողովրդական ոճով խմբագրուած է:*

Ծիտը ծառին կը ծըլվըլայ,
Ծի՛ւ, ծի՛ւ, ծի՛ւ:
Հաւկիթն անուշ ծիտը խոշոր,
Ձագերն ելան փետրակարոս:
Մեր ձագուկն է դեղին կտուց,
Դեղին կտուց, մեղրակտուց:
Թը՛ռ, Թը՛ռ, Թը՛ռ:

*ԼՈՒՍԱՍՏՈՒԵՐ: Այս խաղին մէջ ալ տրուած է խորունկ մտածում մը: Տղան կ'ուզէ բռնել Թռչունը (լուսաստուերը), բայց մայրը կ'ըսէ անոր. «Այս Թռչունը միայն պայծառ լոյս մըն է, դուն չես կրնար բռնել զանի ձեռքով. Թող աչքդ գգուէ ու հոգիդ հրճուի. նոյնը տեղի կ'ունենայ կեանքին մէջ զանազան երեւոյթներու մէջ, ուր ձեռքով բռնել անհնար է բան մը, որ ազնիւ զգացումներով կ'ստացուի» ևլն: Փոխանակ գերմանական այդ մութ իմաստասիրական բացատրութիւնները որդեգրելու, լուսաստուերին խաղը կրնանք կատարել հետեւեալ երգով.*

Ծիտը ծառին կը ծըլվըլայ,
Ծի՛ւ, ծի՛ւ, ծիւ:
Բազէն գլխոյն պտոյտ կուտայ,
Վա՛յ, վա՛յ, վայ:
Ծիտը լռեց ծիտը վախցաւ,
Վա՛յ, վա՛յ, վա՛յ:
Բազէ թը՛ռ, բազէ թը՛ռ,
Հա՛յ, հա՛յ, հա՛յ:
Ծիտը թռաւ սարէն ի ձոր,
Գլորեցաւ կարմիր խնձոր,
Ծիտը թռա՛ւ
Ծիտը փախա՛ւ.
Թը՛ռ, թըռ, թը՛ռ:

*Ըստ այսմ* Ֆրէօպէլի *բոլոր մկանային խաղերուն ու երգերուն*

*համար կարելի է պատրաստ գտնել կամ ժողովրդական ոճով յօրինել գաւառական խաղեր ու երգեր։*

*Տղան երբ կ'սկսի քալել ու շատախօսել, արհամարհելու չ'ենք նաև պարզ խաղալիկները, միայն մանկավարժական զգացում ու հեռատեսութիւն ունենալու է, գիտնալու համար թէ՝ այդ խաղալիկներէն որո՞նք աւելի նպաստաւոր կրնան ըլլալ դաստիարակութեան գործին։*

*Դիտուած է որ մանր տղայք առ հասարակ այն խաղալիկներէն հաճոյք կ'զգան, որոնք իրենց ծանօթ իր մը կամ կենդանի մը կը ներկայացնեն։ Սակայն այս խաղալիկները պարզ պիտի ըլլան, որպէս զի տղան կարողանայ անոնցմով բան մը շինել։ Օրինակի համար կ'ուզենք մեր տղուն հետ պուպրիկին խաղը խաղալ։ Տղան կը հանուեցնէ ու անկողին կը դնէ պուպրիկը, մայրը իր տղուն երգած օրօրը այս առթիւ կ'երգէ նաև պուպրիկին։*

Տանտան պէպէք, տանտանա,
Տանտան մինչեւ քընանայ.
Օրօր չուզեր խեղճ կ'ընէ,
Սիրտ պէտք է որ դիմանայ: Եւլն. (1)

*Փոքր տղոց երգել, ու երգել տալ. սքանչելի է այս գաղափարը* Ֆրէօպէլին*։ Հոս չ'ենք ուզեր երկարել թէ ի՛նչ մեծ հաճոյք է տղոց համար, գործ մը կատարած ժամանակնին երգելը, որով ո՛չ միայն լսողութիւնը կը սրուի, այլև լեզուն կը բացուի։ Պզտիկները մեծ ուշադրութեամբ կը լսեն մեծերուն երգերը և մէկ երկու անգամէն արդէն իւրացուցած են։ Մայրեր զգոյշ ըլլալու են և երբէք տղայոց առջև երգելու չեն զգայնոտ ռոմանսներ, որոնք լսողութիւնն ու ճաշակը աւրելէն զատ, ջղային դրութեան վրայ ալ գէշ կ'ազդեն։ Երգին ալ չափազանցութիւնը վնասակար է։ Դաստիարակուհիներ կան որ շարունակ կ'երգեն ու ամէն բանի յանգ կ'որոնեն, որով ուսման այս կարեւոր գործիքին տղայք անզգայ կը մնան։ Պէտք չ'է երգել նաև այնպիսի երգեր ուր բառերու պարապ խաղ մը կայ միայն։*

(1) Տես «Մանկական Պարտէզ». Պոլատեան։

Երբ տղան ձանձրանայ պուպրիկը օրօրելէն, մայրիկը խաղին նիւթը իսկոյն կը փոխէ։ Կեանքին մէջ միայն մանկատածութիւն չի կայ, մանաւանդ որ 2—3 տարեկան տղայք միջավայրի բազմաթիւ առարկաներն ու կենդանիները տեսնելու հետամուտ են։ Ասոնք ամէնը մօր մը ձեռքին մէջ թանկագին միջոցներ են հետաքրքիր զրոյցներու շարք մը հիւսելու։ Շատ մայրեր կը շուարին թէ ի՞նչ խօսին. շատեր ալ ձեռնարկ կը փնտռեն խօսակցութեան նիւթեր քաղելու համար։ Ասոնք երբէք ձեռնարկի կամ դասագիրքի պէտք չունին, կեանքին ստուար հատորը, բնութեան համայնապատկերը փռուած է իրենց աչքին առջև, ինչ որ տղուն ուշադրութիւնը կը գրաւէ, կրնայ խօսակցութեան նիւթ ըլլալ։

Ձեր զրոյցներու մէջ, մայրեր, հաղորդեցէք այն ճիւղը, զոր դուք ունիք, որովհետև ձեր յիշողութեան մէջ մնացածն, աւելորդ մասերէն յղկուած զուտ կորիզն է, դիւրամարս՝ ձեր տղոց համար։ Դպրոցական դասաւանդութիւն չ'է որ կը պահանջուի մօրմէն։ Դուք մոռցած էք բոյսի մը ներքին կազմութիւնը, սննդառութիւնը, շընչառութեան օրէնքները, բայց լաւ կը յիշէք թէ ծառն արմատով կը ծծէ ջուրը, տերևներով կը շնչէ օդը. ահա ա՛յն ինչ որ կը բաւէ ձեր տղուն։

Հիմայ շարունակենք մեր պուպրիկին խաղը։ Տղան հանեց զայն անկողնէն։ «Մայրիկ, պուպրիկը արթնցաւ կաթ տալու է»։ —Ահա՛ պուպրիկը խմեց, խմեց բայց դեռ այնչափ կաթ կայ։ «Քիչ մըն ալ քուչուկին տանք»։ — Կատուին ալ տա՞նք, Արմինէ, բայց մէջը բան մը չ'է մնացեր։ «Քուչուկը կերաւ ամէնը, կ'ըսէ տղան շունը ցուցնելով, պուպրիկէս աղէկը չի կայ, ինծի կը սիրէ, ամէն բան ինծի կը ձգէ։

Խաղը երբէք իր հաճոյքը չի կորսնցներ տղուն համար, չ'նայելով որ անիկայ շուտ շուտ կը հասկնայ շնչաւոր և անշունչ առարկաներու տարբերութիւնը։ Անոր համար տարբերութիւնը այն է որ մայրս կ'ուտէ իսկ պուպրիկը չ'ուտեր։ Առաջին անգամ անհրաժեշտ է որ տղան այս գաղափարը կազմէ։

— Է՜հ, ուրեմն Արմինէ, եկուր, պուպրիկին թևերէն բռնենք ու վազենք։ Կամաց քալենք, հիմայ քիչ մը շուտ, աւելի շուտ։ Մենք քառարշաւ ալ կրնանք քալել ձիերուն պէս հոբ, հոբ, հոբ։ Հիմայ դուն վազէ մենք պուպրիկին հետ ետևէդ հասնինք։ Օ՜հ,

շատ վազեցինք, յոգնեցանք... քիչ մըն ալ հանգստանանք։ Որչա՜փ կարմրեր ես, ճակատդ քրտինքի մէջ է, բայց պուպրիկը բան մը չ'ունի։ —Ո՛չ պուպրիկն ալ քրտնած է, նայէ՛ ո՜րչափ կարմրած է։

Տղան շատ լաւ հասկցած է որ պուպրիկին վրայ փոփոխութիւն մը չի կայ, մինչեւ անգամ չարաճճի ակնարկ մը կը նետէ ձեզի զգացնելու համար որ կամաւ կ'ըսէ եւ որպէս զի հակառակի՝ թաշկինակով անոր երեսը կը սրբէ։

—Նայէ՛, Արմինէ, աքլորը մեզի կը նայի, խաղալիկը ձգէ։

(Մայրիկը կ'երգէ)։

Դու ինձ ըսէ աքաղաղ
Ոսկի կատարիդ մատաղ
...................

Տղան կ'սկսի երգել մօրը հետ, ու առանձին ալ կը կրկնէ։

—Մայրիկ, դեռ ամէն բան չխաղացինք պուպրիկին հետ։

—Դո՛ւն ըսէ, ի՞նչ խաղանք։

—Պուպրիկին հիւր երթանք, աքլորն ալ հետերնիս տանինք։

—Բայց աքլորը հիւր չ'երթար, անի բակէն չի հեռանար, աւելի աղէկ է մենք աքլորին երթանք կեր տալու. պուպրիկն ալ հետերնիս տանինք։

Տղան կ'առնէ պուպրիկն ու մօրը հետ բակը կ'իջնայ։

—Եկուր, եկուր, աքլորիկ, կովն ալ կանչենք, Արմինէ։

Կովիկ, կովիկ,
Կաթնաղբիւրիկ.
Եկ մեր քովիկ,

Տղան սենեակը կը վազէ ու գաւաթ մը կաթ կը բերէ աքլորը կերակրելու համար։

—Արմինէ՛, աքլորը կաթ չ'ուտեր, անիկայ հատիկներ կ'ուտէ։

Աղբը կը քրքրէ, որդ կ'որոնէ։ Աւելի աղէկ է հացի փշրանք տանք։

—Լաւ, լաւ, հաց տանք. կովն ալ հաց կը կտցէ՞։

—Ո՛չ, տղաս, կովը կտուց չ'ունի որ կտցէ, կուտ կ'ուտէ կ'ա-

րածէ։ Նայէ որչա՜փ երկար ու ծանր կը ծամէ։ Ականջները գլխուն երկու կողմը կախուած են, իսկ եղջիւրները շատ մեծ են։

Կովը պէտք չ'է բարկացնել ապա թէ ո՛չ եղջիւրով կը զարնէ։ Կը տեսնե՞ս ինչպէս կը վռնտէ ճանճերը պոչով։ Մո՜ւ, մո՜ւ, մո՜ւ, կը պոռայ, պառաւը կը կանչէ, ջուր խմել կ'ուզէ։ Կաթը լեցուն է ծիծերուն մէջ, պառաւը կ'ուգայ կովկիթը ձեռքը կթելու համար.

—Նայէ, մայրիկ, ի՜նչ աղտոտ է կովը, երկու կողերուն վրայ ալ աղբ կայ, իսկ պո՜չը...։

—Գեղեցիկ չ'է, իրաւունք ունիս, բայց օգտակար է. մեզի կաթ կուտայ դուն ալ կը խմես։

—Ես կ'ուզեմ անոր ալ կեր տալ։

—Հիմայ պիտի ճաշենք, ճաշէն ետքը ջուր ու կեր կուտանք։

—Քիչ մը բան տանք, մայրիկ։

—Է՜, կտոր մը հաց տուր վրան աղ ցանած։ Տեսա՞ր ինչպէս ձեռքէդ առաւ կերաւ։ Եթէ ամէն օր տաս ա՛լ կը վարժուի, դուռին առջև կը բառաչէ և հաց կը խնդրէ։

Տղան ուրախութենէն կ'ոստոստէ, քիչ մը հաց մնաց, կ'ըսէ, ան ալ կ'ուզեմ կովին տալ։

—Բաւական է տղաս, ան ալ հաւերուն փշրենք։ Նայէ՛, ի՞նչպէս հաւերը զատ զատ իրենց ձագերով ման կուգան կեր կ'որոնեն։ Եկէ՛ք, հաւեր, եկէք, ձեզի փշրանք տանք։ Նայէ՛, ի՞նչ աղուոր կը կտցեն, քը՞չ... աքլոր, դուն մեծ ես կրնաս կեր գտնել, թող որ ձագուկները ուտեն։

Հաւբակին մէջ կ'երկարի այս խօսակցութիւնը, որքան որ ուզէք ու տղան կը վարժուի տարբեր նիւթերու վրայ ալ ձեր ուշադրութիւնը հրաւիրել։ Որքան շատ առարկաներու վրայ դարձնէք տղուն ուշադրութիւնը, այնքան հարցումներու հեղեղ մը պիտի թափէ նա։ Դուք պիտի պատասխանէք ամէն հարցումներուն ուշադրութեամբ, ծածկելով այն մասը որուն չի հասնիր տղուն խելքը։ Մեծ սխալ մըն է 2—3 տարեկան տղոց բացատրութիւններ տալ այնպիսի առարկաներու և երեւոյթներու վրայ, զորս նոյն վայրկեանին իրենց աչքին առջևը չ'ունին, վասն զի ուղեղին մէջ մտապատկեր մը չի հաստատուած՝ կը վարժուի ձեր ըսածը կրկնել։ Այս ընթացքով կազմուած գաղափարները անկատար են, ու եթէ դայ ուղղութեան մէջ յարատեւէք, տղան այլեւս ձեր ամէն խօս-

[illegible] [illegible] [illegible] կը վարժուի, անձնական փորձառութեան-[illegible], [illegible]թեան այդ մղիչ ուժը կը բթանայ և ձեր [illegible], [illegible] ու [illegible] տղան, բնութենէն կենդանի ու վառ [illegible] [illegible] [illegible] տեղ, կը բաւականանայ դիտել զձեզ [illegible] [illegible] [illegible]թեանց, տեղեկութիւններ՝ որոնք իրենց թերի [illegible] [illegible] [illegible] կը սրբուին միտքէն։

[illegible] [illegible]թիւն կը պատճառեն նաև խօսակցութեանց մէջ [illegible] [illegible]ելի բառերն ու գաղափարները։

— Է, [illegible], [illegible] մըն ալ նստինք։
[illegible] [illegible] ու երգենք

([illegible] կ'երգէ ու ան կ'ունկնդրէ)։

Արմինէ ունի գոմ ու հաւբակ,
Հոն կենդանիք ամէն տեսակ,
Խոզն ու հորթուկ,
Ճերմակ գառնուկ,
Այծը մօրուեղ ու սուր եղջիւր,
Հնդկահաւը փայլուն փետուր,
Խաթուն հաւը կարմիր կատար,
Ճերմակ սագը ծուռվիզ աղբար,
Բադը կարճոտ,
Ջուրի կարօտ։
Ձայն կ'արձակեն
Խնծում ու չէն։
Հորթը՝ մո՛ւ, մո՛ւ, մո՛ւ, մո՛ւ,
Խոզը՝ ռուխի՛, խի՛, խի՛, խի՛,
Գառնուկը՝ մէ՛, մէ՛, մէ՛, մէ՛,
Այծը՝ քէ՛, քէ՛, քէ՛, քէ՛,
Հնդկահաւը՝ կուլո՛ւք, կուլո՛ւք։
Հաւը՝ կը՛թ, կը՛թ, կը՛-թա՛ք.
Սագը՝ ղա՛, ղա՛, ղա՛, ղա՛,
Բադը՝ վա՛գ, վա՛գ, վա՛գ, վա՛գ։

Բայց պիտի ըսեն քաղքենի տիկիններ թէ՝ ո՞ւր գտնենք այդ [illegible]... համբակը որ ձեր առաջարկած խօսակցութիւններն ընենք։

*Մեր գրոյցները իբր օրինակ դրուած են և եթէ չունիք այս նիւթերը, ուրիշ ո՛չ նուազ հետաքրքրական առարկաներ ամեն վայրկեան կը գրաւեն ձեր տղուն ուշադրութիւնը, խօսեցէք անոնց վրայ։*

*Ամառը կ՚անցնի, աշունը եկած է, ցուրտ է, անձրեւ՛ ու ցեխը արգելք կ՚ըլլան դուրսը զբօսնելու։ Տղան փակուած է սենեկին մէջ, ի՞նչ պիտի խօսինք, ինչո՞վ պիտի զբաղինք։ Սենեկին մէջ խօսակցութեան նիւթեր չեն պակսիր։ Օդը ամպոտ է արեւը իր դէմքը ծածկած է, տղան կ՚ուզէ արեւը տեսնել, դուք կը մասնակցիք անոր փափաքին ու կ՚երգէք։*

Արեւ արեւ դուրս ելիր (1)

. . . . . . . . . . . . . . . . . . . . . .

*Աշնան ու ձմրան տղոց հետ կրնանք խօսիլ տնտեսութեան մէջ գործածուած բազմաթիւ առարկաներուն վրայ — կա՛ն կարասիք, հագուստ, խոհանոցի անօթներ, կերակուրներ, մանր գործիքներ եւայլն։ Ասկէ զատ լաւ կ՚ըլլայ եթէ տունին մէջ ունենանք քանի մը ընտանի կենդանիներ։ Եթէ ձմեռը պտոյտի ելլանք, որքան նոր երեւոյթներ օրերով խօսակցութեան նիւթ պիտի ըլլան։ Բնութեան մէջ չի կայ անկիւն մը ուր դիտելու, զննելու, խօսելու արժանի բան մը չըլլայ։ Մեր չուրջը բնութիւնը տարածուած է բեղուն ու զեռուն, այդ կեանքէն պիտի առնենք խօսակցութեանց առաղձը։ Մանկական կեանքի այս առաջին շրջանին մէջ աւելի կենդանիներով կ՚զբաղինք, որովհետեւ այդ ժամանակ տղաք աւելի կը հետաքրքրուին կենդանի և շարժուն իրերով։ Նոյն հետաքրքրութիւնն ունին նաեւ յաջորդ շրջանին մէջ, բայց տեսութեան հորիզոնը աւելի ընդարձակ է, դիտողութիւններն աւելի ճիշդ են ու որոշ։ Այդ ատեն կրնանք կենդանեաց կեանքին ու բնաւորութեան վրայ բաներ մը ըսել։ Իսկ երեք երեքուկէս տարեկան տղոց կարելի է ծանօթացնել առարկաներուն ու երեւոյթներուն միայն արտաքին բնորոշ գիծերը։ Մօր կամ դաստիարակին առաջին պարտականութիւնն է արթնցնել տղուն մէջ դիտողութեան սէրը։ Մեր խօսակցութեանց մէջ տղան կը սորվի ո՛չ միայն այն* նախադրութիւններն *ու* մակբայ-

(1) *Տես Ընթերցարան Մանկական Պարտէզ Պալապանի։*

Նէրը, որոց համար այնքան վարժութիւններ ունի Ֆրէօպէլ, այլ նաեւ մեր լեզուին նրբութիւնները։ Կը վարժուի իբր հայ մտածել ու խօսիլ։

Երբ տղան լրացնէ երեք տարին, այն ատեն գնդակին խաղերը վերստին կ'սկսին։ Գնդակը մենք կը գործածէինք առաջ բռնելու, նետելու, քաշելու համար եւայլն, իսկ հիմայ այդ խաղալիկը բազմապիսի խաղերու ծառայելէն զատ, կու գայ նաեւ ցա՛րդ ըմբռնուած շարժումներուն տեսակը ծանօթացնելու, առարկաներու փոխադարձ դիրքը որոշելու։ Ասկէ զատ կը ծանօթանանք գոյներուն աւելի հասուն կերպով։

Տղան նստած է սեղանին առջեւ, մայրը երիզով մը կապուած գնդակը կը նետէ սեղանին ետեւն ու կը հարցնէ։ — Ո՞ւր ինկաւ։ — Գնդակը սեղանին ետեւն ինկաւ։ — Է՛հ, թող մեզի գայ նորէն այս կողմէն (դէպի աջ կը քաշէ)։ Ո՞ր ձեռքովդ կը քաշես։ Գնդակը սեղանին աջ կողմն է։ Քու աջ կողմդ ուրիշ ի՞նչ կայ։ — Պահարան, աթոռ, եւայլն։ — Գնդակը դարձեալ հոս է, ո՞ւր է։ — Սեղանին ետեւը։ — Ո՛չ, սեղանին առջեւը. Թող հիմայ պտոյտ մը ընէ մեր գնդակը սեղանին բոլորտիքը։ Հիմա դէպի ո՞ւր։ Դէպի— ձախ։ Տես գունտը կը ճամբորդէ սեղանին չուրջը։ — Գնդակը ո՞ւր չի գնաց միայն։— Սեղանին տակը։ Սեղանին տակը մութ է, թէ որ իյնայ դժուար պիտի գտնուի, եկուր կախենք սեղանին վրայ։ Կը տեսնես ի՛նչ պայծառ կարմիր գոյն մը ունի։ Ո՞ւր դրի։ — Սեղանին վրայ։ Հիմայ թող ցատկէ սեղանին վրայ թռչնիկի մը պէս։

Ծիտ իմ, ծիտ իմ
Կը ծըլվըլամ
Ծի՜ւ, ճի՜ւ, ճի՜ւ,
Կը ոստոստեմ,
Կը թռչկոտիմ,
Թի՛ւ, թի՛ւ, թի՛ւ:
. . . . . . . . . . . . . . .

Ահա կոչնակը մեր եկեղեցիին.

Կոչնակ, կոչնակ սիրուն
Կանչէ մանչըս առտուն
Հնչէ իմ կոչնակ

Ձայն տուր համարձակ·
Պիմ, պօմ, պիմ, պօմ, պիմ, պօմ:

*Մայրը գունտը կը նետէ ու կը բռնէ. դարձեալ կը նետէ և կ'ուզէ որ տղան բռնէ: Նայէ՛, գնդակը ո՞ւր գնաց: — Վեր գնաց: Իսկ յետոյ ո՞ւր, հո՞ն մնաց: — Ո՛չ, վար ինկաւ: Նայէ հիմայ մեծ ժամացոյցին ճօճանակն է աս որ պիտի շարժի աջ ու ձախ, առաջ ու ետ:*

Ինչպէս շարժի իմ դաստակ
Այնպէս ճօճուէ, ճօճանակ.
Ճօճանակս հո՛ս, հեռո՛ւն
Ցասկէ ուրախ ու խնդում:

*Արմինէ միտքդ է թռչունին բոյնը ծառին վրայ: Մէջը ի՞նչ կար: Մանր հաւկիթներ: Եկուր հիմայ բոյնը շէնք ու գնդակը թող ձուն ըլլայ:*

Տեսէք բոյնը, տեսէք ձուն,
Մէջը չի կայ մայր թռչուն.
Թռեր է նա իր բոյնէն,
Երգ բերելու անտառէն:
Թողունք բոյնը, թողունք ձուն
Մեղք է սիրուն մեր թռչուն:

*Այս կարգի զբաղումներ օրը 10 — 15 վայրկեան պիտի տեւեն այն ալ ազատ ու զուարթ և առանց ստիպումի: Ասոնք միանալով խաղին ու ուսումին, համեմուած անուշ երգերով, պատմութիւններով ու զրոյցներով, առարկաներուն շարժմանց ու զանազան դիրքերուն վրայ որոշ գաղափարներ կուտան տղուն: Գնդակի խաղերով կարելի է վարժել նաեւ աչքին ու ձեռքին համաչափութիւնը միանուագ գործունէութեան մէջ: Գալով գոյներուն, նախ պէտք է ծանօթացնել հիմնական գոյները — կարմիր, դեղին և կապոյտ և ապա մնացեալ չորս գոյները: Գոյներու ծանօթութեան կը նպաստէ նաեւ մեծ գնտակը որուն վրայ 7 գոյներն ալ կը տեսնուին: Վարժութեան համար տղան կը կտրատէ գունաւոր թղթեր և կտորները գոյներուն համեմատ խումբերու կը վերածէ: Նոյն վարժութիւնը կարելի է ընել տալ ուլունքներով, բրդի ու մետաքսի գունաւոր կտորներով եւայլն: Դաշտէն կամ պարտէզէն կը ժողվենք խոտեր ու ծաղիկներ:*

Ահա մանուշակը ո՞ր գոյն գնդակին քով պիտի գնեմ։ Րէհանը ո՞ր գոյնին քով։ Հապա վա՞րդը, կակա՞չը, մեխա՞կը։ Ո՞ւր պիտի գնես այս ծղօտը, տերեւը, մասուրը։ Հագուստներս ի՞նչ գոյն ունին։ Մեր սենեակին ձեղունը ի՞նչ գոյնով ներկուած է։ Ո՞վ ներկեց։ Պարտէզին մէջ ո՞ր գոյնը աւելի շատ կը տեսնես։ Ի՞նչ գոյն ունին սա դիմացի տունին կղմինտրները։ Հիմա երթանք պարտէզ դուն քու ձեռքովդ կտրէ բոլոր այս ծաղիկները։ Կրնա՞ս գտնել մանուշակը։ Ի՞նչ, մոռցա՞ր որ ծաղիկն է մանուշակը։

Կապոյտ գլխով կանանչ ոտքով
Ես ծաղիկ մ'եմ անուշ հոտով

. . . . . . . . . . . . . . . . . . . . . . . .

— Այո՛, յիշեցի, ահա մանուշակը։

Կրնայ ըլլալ որ պարտէզին մէջ ծիածա՞նը տեսնուի, այն ատեն երեւոյթը դիտել տալէն յետոյ կ'ըսէ մայրը։ Երթանք տուն եւ գունաւոր թղթի երիզներով տետրակին մէջ ծիածան մը պիտի փակցնենք։

Ապակեայ հատուածակողմով մը մայրը կրնայ ցուցնել ծիածանին 7 գոյները։

Այս շրջանին մէջ տղայոց մեքենական զբաղմանց բնոյթը փոփոխութեան յարմարութիւն պիտի ունենայ։ Մեքենական զբաղումները 15—20 վայրկեանէն աւելի չի պիտի տեւեն, վասն զի տղան առ առաւելն նոյնքան ժամանակ կրնայ նոյն տեղը մնալ։ Ասիկայ քմայքի արդիւնք պատուէր մը չէ, այլ հաստատուած է տղոց վրայ կատարուած փորձերով։ 2—4 տարեկան տղայք կ'ուզեն շարժիլ շարունակ մէկ տեղէն միւսը։ Եթէ անոնց աթոռները պատերուն տակ դրուած ըլլան, շաժելով ու շարժելով դէպի կեդրոնը կուգան եւ ընդհակառակը. իրենց խաղալիկները անդադար մէկ անկիւնէն միւսը կը տեղափոխեն, մէկ տուփէն միւսը կը տեղաւորեն, տախտակամածին վրայ կը քաշքշեն եւայլն։

Ժապաւէնի, չուանի, քուրջերու կտորներու վրայ սորվեցուցէք հանգոյց շինել ու քակել, կարել խոշոր ասեղով, կոճակներ ու փայտիկներ շարել եւլն։ Երբ տղան աթոռը կը քաշքշէ առիթէն օգուտ քաղելով, սորվեցուցէք թէ ի՞նչպէս կրնանք կառավարել. ո՞ւր պէտք է լծել ձին, ո՞ւր պիտի ըլլայ կառավարին բազմոցը։

Քանի մը աթոռներ շուրջանակի կը շարենք, վրան ալ սփռոց մը կը ծածկենք, ու ահա խանութը յաճախորդի կ'սպասէ. տղան վաճառորդն է որ կը շատախօսէ զանազան ապրանքներուն յատկութիւնները բացատրելու համար։ Կը բաւէ մէկ երկու անգամ հնարաւոր խաղի մը սարքումին օգնել որպէս զի տղայք ինքնին նորերն հնարեն։

Այս խաղերուն մէջ տղուն հոգեկան տրամադրութիւնը զուարթ է, իսկ մենք գիտենք թէ ի՛նչ մեծ նշանակութիւն ունի հոգւոյ զուարթութիւնը դաստիարակութեան մէջ։ Պէտք է գիտնալ թէ ամէն հաճոյք այն ատեն միայն կը նպաստէ մանկան ֆիզիքական ու իմացական դաստիարակութեան, երբ ուղղակի իրեն կազմած պարզ խաղերէն ու զբաղումներէն կը բղխի։ Դեռ եւս կանուխ է կարել, գծագրել և Ֆրէօպէլեան կարգ մը ուրիշ զբաղմանց համար, բայց անոնց նախապատրաստութիւնը անհրաժեշտ է։

Երեք տարեկան տղուն կրնանք սորվեցնել մատիտով կամ քար գրիչով թղթի կամ գրալէմի վրայ առարկաներուն շրջագիծը հանել։ Միայն աշխատելու է որ գործը մաքուր ու ճիշդ ըլլայ։

Հարկաւ չ'ենք ուզեր ծայրայեղ բծախնդրութեամբ զզուեցնել տղան, սակայն ճշտապահութիւնն ու մաքրասիրութիւնը այս առաջին աշխատութեանց էն կարեւոր պայմաններն են։ Յայտնի է թէ՝ բանի մը նորէն վարժուիլն աւելի դժուար է քան առաջին անգամ սորվիլը և սորվիլն աւելի դիւրին է քան ձեռք բերուած սովորութիւն մը մոռնալը։ Այս իսկ պատճառաւ պէտք է այդ աշխատութեանց տետրակները խիստ մաքուր պահել։ Ասիկա կարեւոր է ապագային համար, վասն զի անգամ մը հաստատուած սովորութիւնը բնութիւն կը դառնայ։ Երբ ժամանակ մը վերջը տղուն ցուցնէք իր տետրակը, ուրախութենէն կը թռչի, տեսնելով իր գործին ընդարձակութիւնը։ Այս առթիւ ոգեւորուած կը յիշէ թէ ի՛նչ պարագաներու մէջ կատարուած է աշխատութիւնը, խօսակցութիւն կը բանայ նիւթին ու աշխատութեան մանրամասնութեանց վրայ։

Գծագրութենէն զատ կարելի է թղթով շինել տալ զանազան առարկաներ։

— Եկուր, Արմինէ, լաչակ մը շինենք, բայց պառաւին լաչակին չափ մեծ չի պիտի ըլլայ, այնքան պզտիկ որ կարենանք պուպրիկիդ գլուխը կապել։

Տղան կ'աշխատի ձեւի բերել լաչակը, թէև քիչ մը ծուռ կ'ըլլայ, քանի որ մկրատ բռնելու վարժուած չ'է դեռ։

Բացատրեցէք տղուն որ լաչակ շինելու համար նախ պէտք է ուղիղ թաշկինակ (քառակուսի) մը շինել, ու ապա թաշկինակն այնպէս ծալլել որ հակադիր անկիւնները ճիշդ իրարու վրայ գան։ Ճերմակ ու գունաւոր թղթերէ կտրել տուէք տղուն հաւասար ու երկայն ժապաւէններ, թող անոնցմով ծալլէ ու շինէ զանազան առարկաներու ձեւեր։ (Ֆրէօպէլի կիտանկարը աւելի ուշ ժամանակի կը յարմարի)։ Դարձեալ կրնանք տալ գունաւոր ուլունքներ, սիսեռ, ցողունի (ցորենի) կտորներ, սեխի և ձմերուկի կուտեր՝ շարաններ կազմելու համար։

Ֆրէօպէլ թուաբանական վարժութեանց կ'սկսի իր մեծ խորանարդովը, որ ութը մանր խորանարդիկներու վերածուած է (Գ. Նուէր)։ Սակայն մէկ անգամէն մինչև ութը թիւ տալ, տղոց ծանր կուգայ, մինչդեռ բաւական ժամանակի պէտք ունին անոնք առաջին երեք չորս թիւերն ըմբռնելու և անոնցմով հաշիւներ կատարելու համար։ Արդարև սքանչելի մէթոտ մըն է թանձրացեալ ու շօշափելի նիւթերով հաշիւ սորվեցնել տղոց․ սակայն խորանարդիկներէն դուրս միջավայրի տարբեր առարկաներուն աչք գոցել ներելի չ'է։ Թուաբանական վարժութեանց նիւթ պիտի ըլլան տղուն չուրջը գտնուող ամէն իր։ Այս վարժութիւնները կը մարզեն միտքը, դատողութիւնը, հաշուելու կարողութիւնը, մէկ խօսքով կ'ընտելացնեն տղան աւելի որոշ տեսնելու ամէն բան։

Թուաբանական խօսակցութեանց մէջ կը մարզուի նաև լեզուն։ Ասոր համար երբ տղուն մանկական խնդիր մը կ'առաջարկենք, պէտք է սպասել որ նոյնութեամբ պատմէ ու ապա լուծէ։ Լուծման մէջ ստիպուած ենք հարցումներով օգնել անոր, բայց որովհետև գործը 3—4 տարեկան տղոց վրայ է, զգոյշ ըլլալու է գործին դասական ուղղութիւն մը տալէ։

Այս հասակին չ'են յարմարիր ո՛չ վերացական թիւեր և ո՛չ գործողութեանց նշաններ․ նոյնպէս ժամանակը չ'է սորվեցնելու բազմապատկութեան աղիւսակը, որուն ուսումը աւելի ուշ ատեն երեւան կուգայ ինքնին, առանց բռնադատելու և բթացնելու յիշողութիւնը, այլ միայն երբ արդիւնք թիւերու փոխադարձ յարաբերութեան պայծառ ու որոշ ըմբռնումին։ Նախ միայն չորս թիւերու վրայ կեդրոնացէք ու ապա անցէք մինչև ութ։ Հնար եղածին չափ պէտք է տալ տղուն 8 թիւերով չորս գործողութիւններ (մտաւոր)։ Ամբողջին մասերուն վրայ խօսիլը տարաժամ է։

3—4 *տարեկան տղոց* Ֆրէօպէլ *կուտայ իր* Բ. Նուէրը (1)՝ *փայ-տէ* գունտը, գլանը *և* խորանարդը։ Ֆրէօպէլ *այս երեք մարմինները կ'ընտրէ իբր խաղալիկ, որովհետև պարզագոյններն են և տիեզեր-քի բոլոր ձևերուն հիմը կը կազմեն. գունտին ձևը կը տեսնուի երկրային ու երկնային բազմաթիւ մարմիններուն վրայ, գլանը՝ բուսականութեան և խորանարդը՝ հանքային թագաւորութեան մէջ։*

3—4 *տարեկան տղուն դատողութիւնը ըստ բաւականին զար-գացած է և այս երեք մարմինները իբր բաղդատութեան նիւթ շատ օգտակար կրնան ըլլալ։*

*Այս խաղալիկը մասամբ հիներին նմանելով նոր յատկութիւններ ալ ունի։ Գլանը բաղդատութեան միջին եզրն է գունտին ու խո-րանարդին մէջ։ Այս ձևերու վրայ դաստիարակները բազմաթիւ վարժութիւններ կրնան ընել։ Նախ բրդէ գնտակին յատկացեալ խաղերուն մեծագոյն մասը կը յարմարին նաև փայտէ գունտին։ Տղայէն կը պահանջուի գտնել բրդէ գնտակին ու փայտէ գունտին, փայտէ գունտին ու խորանարդին, գլանին ու գունտին, գլանին ու խորանարդին նմանութիւններն ու տարբերութիւնները։ Կը սոր-վեցնենք երեք մարմիններուն կողերը, անկիւնները, երեսները՝ վերջապէս ոլորուն լարի մը վրայ կը դարձնենք երեք մարմինները զատ զատ, շարժուն վիճակին մէջ անոնց առած նոր ձևերը դի-տելու համար։*

*Եթէ, օրինակի համար, խորանարդին մէկ երեսին կեդրոնը դրուած մետաղեայ օղակէն ոլորուն լար մը անցնենք ու թո-ղունք որ արագ դառնայ, շարժման մէջ կողերն ու անկիւնները կարծես թէ կը հարթուին և խորանարդը գլանի ձև կ'առնու։*

Ֆրէօպէլ *կը պահանջէ նաև որ տղոց սորվեցնենք այդ մարմնոց քանի մը բնագիտական յատկութիւնները, կայունութիւն, անթա-փանցութիւն, դիմակալութիւն, այս առթիւ կարգ մը երգեր ալ երգելով։ Ինչպէս։*

Թէ որ գունտը ձեռքդ գայ
Խորանարդին տեղ չի կայ
Խորանարդը քէ բռնես
Տեղ չի գտնար գունտը, տես։

(1) *Տե՛ս Տախտակ Բ.*

*Մայրը կ'երգէ խորանարդին երեսներուն համար*

**Խորանարդին միայն մէկ մաս**
**Պիտի տեսնես հիմայ, տղաս,**
**Մէկ երեսը բաց եմ թողած**
**Հինգը ձեռքիս տակը պահած։**

*Աւելորդ է խօսիլ այս ոտանաւորներուն իմաստին ու լեզուին խեղճութեան վրայ, միայն սա չափին ըսենք որ, տաղտկալի է բնագիտական յատկութիւններ, երկրաչափական ձեւեր, թուաբանական ճշմարտութիւններ երգի նիւթ ընել։*

*Ֆիզիքական յատկութիւնները կարելի է աւելի վերջը զուարճալի փորձերով հասկցնել տղոց։*

*Միայն երեք մարմիններուն — գունտին, գլանին ու խորանարդին վրայ գաղափար տալ գովելի է և կրնայ արդիւնաւոր ըլլալ 3—4 տարեկան տղայոց։*

*Հոս կը դնենք քանի մը վարժութիւններ պայմանաւ որ 1. անոնք 8—10 վայրկեանէն աւելի չի պիտի տեւեն, որովհետև բաւական կը լարեն մանկան ուշադրութիւնը. 2. վարժութիւնները զրոյցներով կենդանացնելով հանդերձ պէտք չ'է սովեցնել ո՛չ երգ և ո՛չ բանաստեղծութիւն այդ նիւթերուն վրայ, վասն զի երկրաչափական ձեւերը, թիւը բանաստեղծութիւն չ'ունին։*

*Ասկէ զատ աւելորդ չ'ըլլար դիտել որ այս զբաղմանց մէջ բնութիւնը իր բոլոր երեւոյթներով ու մարմիններով դիտողութեան ու խօսակցութեան նիւթ պիտի ըլլայ։*

*Անցնինք մեր վարժութիւններուն։*

*Տղուն առջև սեղանին վրայ կը շարեմ գունտը, գլանն ու խորանարդը։*

*— Դէ՛հ, Արմինէ, համրէ տեսնեմ քանի՞ խաղալիկ եկաւ տուփէն։ Ասոնք գնտակին կը նմանին։ — Ո՞չ։ — Գնտակները բոլորովին նմա՞ն են իրարու. տե՛ս մէկը կանանչ է, միւսը դեղին...։*

*Գոյները տարբեր են բայց բանով մը նմա՞ն են իրարու։ Անոնք ամէնն ալ կակուղ, կլոր, թեթև են. ամէնն ալ բրդէ շինուած են, եթէ գետին նետես, ձայն չեն հաներ կամ շատ թեթև ձայն մը կը հանեն. ամէնուն ալ մեծութիւնը նոյնն է. ամէնն ալ կրնամ դիւրաւ ձեռքիս մէջ բռնել։*

Հիմայ նայէ՛ սա խաղալիկներուն, անոնցմէ մէկը նման չէ՞ գնտակներուն։ —Գունտը նման է։ Ինչո՞վ կը նմանի։ — Ան ալ կլոր է սա ալ, ան ալ կը գլորի սա ալ։ — Հիմայ մտածէ թէ ինչ տարբերութիւն կայ գնտակին ու գունտին մէջ։ Գնտակը գետին ձգէ՛, հիմայ ալ՝ գունտը. ինչ եղաւ։ Փայտէ գունտը բարձր ձայն մը հանեց ու գլորեցաւ գնաց, իսկ գնդակը թեթև ձայն մը հանեց ու վեր ցատկեց։ —Ինչո՞ւ համար։ — Չեմ գիտեր։ Ձեռքդ առ գնտակը ու չօշափէ։ —Փայտէ գունտը կարծր է իսկ գնտակը կակուղ է։ —Ինչո՞ւ համար։ — Գնտակը բրդէ շինուած է, անոր համար կակուղ է. իսկ գունտը փայտէ շինուած ըլլալուն՝ կարծր է։ — Գիտես թէ այս խաղալիկին անունը ինչ է։ — Խորանարդ։ —Խորանարդը ինչէ՞ շինուած է։ —Փայտէ։ — Ո՞րքան ծառեր կը ճանչնաս ըսէ՛ ինծի։ — Խնձորենի, տանձենի, սօսի, բարտի, կաղնի, սալորենի, ընկուզենի . . . ։ —Ընկուզենիին փայտը ինչո՞վ ծածկուած է։ — Կեղևով։ Գիտե՞ս Արմինէ, մարդիկ ծառը կը կտրեն կեղևը կը հանեն, մէջէն ճերմակ դեղնագոյն փայտը կ'առնեն, կտոր կտոր կ'ընեն, այդ կտորները տաշելով կը պատրաստեն գունտը, գլանը և խորանարդը։

Արմինէ, պահէ գնտակն ու այս նոր խաղալիկներով զբաղինք։ Կրնա՞ս ցուցնել բան մը որ գունտին նմանի։ —Գլուխնիս կը նմանի գունտին։ — Սակայն պէտք է գիտնաս որ գլուխնիս բոլորովին կլոր չ'է։ Հապա ըսէ՛ տեսնեմ գունտին նման ուրիշ կլոր առարկաներ։—Ընկոյզը, կաղինը, խնձորը, սերկեւիլը, ձմերուկը . . . ։

Ահա միւս խաղալիկներն ալ, գնտակէն զատ անոնք քանի՞ հատ են։

Դաստիարակը պիտի ջանայ որ տղան առաջին անգամ ինքը դիտէ նոր առարկաներուն մասնական յատկութիւնները, փոխադարձ նմանութիւններն ու տարբերութիւնները։ Դաստիարակներ կան որ այս դիտողութեանց չափը կ'անցնեն կարծես երկրաչափութեան դաս կուտան։

Այս երկու առարկաներէն ո՞րն աւելի նման է գունտին։ (Տղան կը տատամսի)։ Երկուքն ալ գետին նետէ ու դիտէ։ —Ասիկա, կ'ըսէ տղան, ու գլանը կը ցուցնէ։ Գլանը կը գլորի, գունտն ալ կը գլորի։ —Հիմա ըսէ՛, ո՞րը աւելի տարբեր է գունտէն։ — Խորանարդը։ — Ինչո՞ւ։ — Որովհետև հաստատ կը կենայ իր տեղը։

— Բայց գլանն ալ իր տեղը կը կենայ։ — Սակայն գլանը թէ կը գլորի և թէ կը կայնի մինչդեռ խորանարդը, միայն կը կայնի։— Այսպէս ուրեմն այս երկու առարկաները, գլանն ու գունտը, իրարու կը նմանին։ Ըսէ տեսնեմ ալ ինչո՞վ կը նմանին իրարու։ Տղանքիչ մը մտածելէն վերջը կ՚ըսէ։— Երկուքն ալ փայտէ շինուած են, երկուքն ալ ձայն կը հանեն, երկուքն ալ ողորկ ու կարծր են։ — Ինչո՞վ կը տարբերին, շօշափէ՛։ — Գլանը սուր ծայրեր ունի իսկ գունտը չունի։ — Գլանը քանի՞ սուր եզերքներ ունի։ — Երկու, մէկ վերի՝ և միւսը վարի կողմը։ —Այս եզերքները կող կ՚ըսուին։ —Մատդ դարձուր կողին վրայ. ի՞նչ ձև ունի։ — Կլոր։ Ըսել է որ երկու կլոր կողեր ունի։— Քանի՞ երես ունի։ Վերը և վարը երկու կլոր և հարթ երեսներ և այդ երկու երեսներուն մէջ տեղը կլոր երես մը։

Գնտակը կողեր չ՚ունի այլ միայն մէկ կլոր երես։ Արմինէ, ըսէ տեսնեմ սենեակին մէջ գլանի նմանող բան մը կը տեսնե՞ս։ —Այո՛, լուցկիին տուփը, գաւաթը, մոմը, վառարանին խողովակը, մատիտս, դաստակս, վիզս, մէջքս...։ Ըստ առաջնոյն պէտք է որոնել տալ խորանարդին ու գլանին նմանութիւններն ու տարբերութիւնները։

Խորանարդը կլոր երեսներ չունի. բոլոր երեսներն ալ հարթ են և հակադիր, բոլոր երեսներն ալ հաւասար են։ Գլանը միայն երկու հարթ երես ունի կլոր շրջագիծերով, իսկ խորանարդը 6 քառակուսի երեսներ ունի վրան, տակը, աջ, ձախ, առջեւը, ետեւը։ Այս երեսները կը վերջանան ուղիղ և հաւասար կողերով որոնք 12 հատ են։ Խորանարդը 8 սուր անկիւն ունի, չորսը վերի կողմը, և չորսը վարը։ Այսպէս ուրեմն խորանարդը 6 երես, 12 կող և 8 անկիւն ունի։

Ըսէ՛ տեսնեմ, մեր սենեակին մէջ ի՞նչ կը տեսնես խորանարդին նման։ — Սնտուկը։ Այո սնտուկը, քիչ մը մեծ է բայց ի՞նչ հոգ։ Ան ալ խորանարդին պէս երեսներ, կողեր ու անկիւններ ունի։ Ուրիշ ի՞նչ կայ խորանարդին նման, —Սենեակը, տուփը, պահարանը եւն։

Երբ տղան չորս տարեկան ըլլայ ալ ժամանակը հասած է Մանկական պարտէզ ղրկելու, ուր վերստին պիտի տեսնէ Ա. և Բ. նուէրները քիչ մը աւելի ընդարձակ և ուր բազմաթիւ մեքենական

խաղեր ու մարզական զբաղումներ ընկերական զուարթ շրջանակի մը մէջ կ'սպասեն իրենց դաստիարակութեան նոր ուղղութիւն մը տալու համար։ Մանկական պարտէզի գլխաւոր օգուտներէն մէկն է ընկերական կեանքի բարերար ազդեցութիւնը տղուն վրայ։ Յաճախ կրկնուած է հանրային դաստիարակութեան կարեւորութիւնը։ Տղան Պարտէզի շրջանակին մէջ, ակամայ կը ծանօթանայ նոր ընկերներուն դիտողութիւններուն, գաղափարներուն ու փորձերուն։ Անոնք, ինչպէս յայտնի է, միջավայրին լայն ու խորունկ ծանօթութիւնը կուտան տղուն, որ ընկերներուն օրինակէն քաջալերուած աւելի գործօն դեր մը կ'ստանձնէ։ Եթէ առանձին դաստիարակութիւնը տղուն անհատական բնաւորութիւնը կը կազմէ, հանրայինն ալ՝ կը պատրաստէ ապագայ բազմապահանջ կեանքին։ Տան մէջ առանձին դաստիարակուող տղոց եսասիրութիւնը, սեփականութեան ծայրայեղ շահագրգռութիւնը, ուրիշներու շահին սահմանափակ ըմբռնումը և դեռ ուրիշ թերութիւններ, անզգալի կերպով կը հարթուին ընկերական շրջանակին մէջ։ Իր հասակակիցներու խմբին մէջ կը վարժուի մշտակցիլ, օգնել ու անկեղծօրէն աշխատիլ ընկերին համար։ Ասկէ զատ կարելի է մղում տալ բարի նախանձին որ կը ջնջէ ծուլութիւնը, անփութութիւնը, անմաքրութիւնը և դեռ ուրիշ թերութիւններ։ Բարի նախանձի գրգռութեան մէջ դաստիարակի պարտքն է զգուշաւոր ընթացք մը ունենալ, ապաթէ ոչ տղան կը վարակուի սին փառասիրութենէ և կը ձգտի աղարտել ամէնն ու իւրաքանչիւրը։ Կը փափաքի տարորոշուիլ, պճնիլ, գովեստներու լաւ նօթեր ստանալ։ Այս կարգի հակումները երբ մէկ կողմէն ուսման անկեղծ շահագրգռութիւնը կ'սպաննեն, որ իմացական գերակշռութեան գլխաւոր լծակն է, միւս կողմէն կը ջնջեն ընկերոջ սէրը, որ դաստիարակութեան գլխաւոր պայմանն է։

Ընկերը գլել անցնելու չափազանց նախանձը անտարբեր կ'ընէ զանի ընկերոջ նկատմամբ, տակաւ ծայր կուտայ ընկերէն յաղթուելու վախը, ատնջանքը՝ մոլի նախանձին, չարախնդութիւնը՝ ընկերին անյաջողութեան, չ'կամութիւն, ցած փառասիրութիւն և ուրիշ վատ յատկութիւններ։ Նախանձը տարափոխիկ ախտ մըն է, որ այնքան արագ ու զօրաւոր կերպով կ'իշխէ հոգիին, որքան պախարակելի կարգ մը կիրքեր։ Օրինակները շատ են, թէ ինչպէս տղայք փառասիրութենէ մորակուած՝ գերուժ աշխատութեամբ.

վրայ տուած են առողջութիւններին ։ Իրաւ է որ մանր տղայք չ'են կրնար ըմբռնել դաստիարակութեան բարձր նպատակը, անհնար է զանոնք կրթել առանց վարձատրութեան, սակայն մեր փափաքն այն է որ տղոց բարի եռանդն ու նախանձը գրգռելու գործին մէջ չափ ու սահման մը դրուի. գովեստներ չի չափազանցուին մէկն առթիւ, ոմանք բացառիկ դիրք մը չի գրաւեն ու իրր կուռք չի խնկարկուին, վերջապէս ընդհանուրին արժանապատուութիւնը ոտնակոխ չըլլայ ։

## ՄԱՆԿԱԿԱՆ ՊԱՐՏԷԶԻ ՇԷՆՔԸ

Մանկական Պարտէզը ընտանիքին ու վարժարանին միջին համագոյցն է ։ Հոն ընտանեկան ազատութիւնն ու դպրոցական կարգապահութիւնը մեղմիւ զիրար պիտի լրացնեն ։ Շէնքը լուսաւոր, օդաւէտ ու ընդարձակ պիտի ըլլայ ։ Շէնքին էն կարեւոր մասն է ընդարձակ ու ծառաշատ պարտէզը ։

Մանկական Պարտէզի շէնքին գլխաւոր մասերն են ։

1. Մարզական խաղերու սրահը ։
2. Մեքենական զբաղումներու սրահը ։
3։ Պարտէզը ։

## ՄԱՐԶԱԿԱՆ ԽԱՂԵՐՈՒ ՍՐԱՀԸ

Նկատելով որ Մանկական պարտէզի մը մէջ էն շատը 200 տղայ կրնայ գտնուիլ, մարզական խաղերու սրահները այնքան ընդարձակ պիտի ըլլան որ գէթ 50 աշակերտ իրենց երկու պարտիզպանուհիներուն առաջնորդութեամբ կարողանան ազատ շարժիլ ։ ընդունելով թէ՝ սրահին մէջ մէն մի տղու առ նուազն $\frac{2}{3}m^2$ տարածութիւն պէտք է, սրահին տարածութիւնը պէտք է ըլլայ $34m^2$ ։ Լաւ կ'ըլլար եթէ մարզական սրահի լոյսը վերէն թափէր, բայց քանի որ այդպիսի շէնք մը գտնելն անհնար է, գէթ պատուհանները շատ լայն ու բարձր ըլլալու են ։

Պատուհանները տախտակամածէն մէկ մէթր բարձր և ձեղունէն ½ մէթր ցած ըլլալու են: Պատուհաններուն փեղկերը ո՛չ թէ տանհնուկ այլ ամբողջութեամբ բացուող ու գոցուող ըլլալու են որ սրահին օդը միշտ փոխուի: Առաստաղին չորս անկիւնները օդային մեքենաներ պէտք է հաստատել: Ասկէ զատ ամէն անգամ երբ սրահը պարապ է պատուհանները բաց պիտի մնան օդափոխութեան համար: Պատերուն ներկը բաց կապոյտ կամ մոխրագոյն պիտի ըլլայ, ճերմակ գոյնը իր շլացուցիչ լոյսով կը վնասէ տղոց աչքերուն:

Պատերուն մէկ մասը՝ տախտակամածէն մինչև պատուհաններուն յատակը, ջերմութեան դժուարահաղորդ նիւթով՝ փայտով ծածկելու է: Օրը երկու անգամ միջօրէի ազատ խաղին և երեկոյեան արձակուրդէն ետքը, ինչպէս այս՝ նմանապէս բոլոր սրահները պէտք է աւլուին, փայտի թաց սղոցուկով, փոշիին օդին մէջ բարձրանալը արգիլելու համար: Սրահին պատերուն երկայնքը դրուած են նստարաններ կամ աթոռակներ. ասոնց նստոցին բարձրութիւնը 29cm., լայնութիւնը 20cm., յենակին բարձրութիւնը 14cm. և յենակին ու նստոցին անկիւնը 93° պիտի ըլլայ:

Պատերը զարդարուած պիտի ըլլան կենդանիներու, ծաղիկներու, իրագիտական առարկաներու, եղանակներու և արհեստներու նկարներով:

Սրահին մնացեալ կարասիներն են խոշոր թուացոյցով մեծ ժամացոյց մը, ջերմաչափ մը և երկու աթոռներ:

Ձմեռը այս սրահին տաքութիւնը 18°ը չի պիտի անցնի:

## ՄԵՔԵՆԱԿԱՆ ՁԲԱՂՄԱՆՑ ՍՐԱՀԸ

Զբաղմանց սրահները ուր տեղի կ'ունենան պարտիզպանուհիներուն և իրենց տղոց մէջ մայրենի զրոյցներ, նստական խաղեր և մեքենական զբաղումներ իրենց յարակից զրոյցներով, երգերով ու պատմութիւններով, քիչ մը աւելի փոքր պիտի ըլլան խաղի սրահներէն: Ինչ որ ըսուեցաւ մարզական խաղերու սրահին պատուհաններուն, յատակին, պատերու ներկին, օդափոխութեան գործիքներուն ևլն.ի համար, նոյնը պէտք է իմանալ նաև այս սրահին հա-

մայ։ Զբաղման սրահի պատերը մերկ պիտի մնան, անոնց միակ զարդը տղոց ձեռագործի աշխատութեան ընտիր օրինակները պիտի ըլլան։ Սրահին մէջ շարուած են աշխատութեան սեղանները։ Ասոնք երկու հոգինոց են, վրայի տախտակը հորիզոնական է և ծածկուած է քառակուսիներով, որոց կողերը հաւասար են Գ. Նուէրի խորանարդիկի մը կողին— 3½cm. սեղաններուն վրայ քաշուած կարմիր քառակուսիները շատ կարեւոր են, կը նպաստեն շէնքերու ուղղութեան, գեղեցկագիտական ձեւերու ճաշակաւոր յօրինումին և ամէն զբաղմանց մէջ գիծերուն ուղղութիւնը որոշելու։

Զբաղման սրահին աշխատութեան սեղանները 25էն աւելի չի պիտի ըլլան և այնպէս մը դրուած՝ որ լոյսը ձախէն գայ, ու պարտիզպանուհիք կարողանան ամէն տղու մօտենալ առանց դժուարութեան։ Սեղաններու չափերն են.

Երկայնութիւն ........... 1,20 մէթր
Բարձրութիւն ........... 0,45 »
Լայնութիւն ............. 0,30 »
Նստարաններուն բարձրութիւնը ........... 0,29 մէթր
» » լայնութիւնը ............ 0,20 »
Ցենարանին բարձրութիւնը .............. 0,45 »
» ու նստոցին անկիւնը ........ 93 աստիճան։

Զբաղմանց սրահին մէջ կան երկու պահարաններ. միոյն մէջ կը դրուին տղայոց դրավէմները, զբաղմանց փաթոյթները, տետրակները ևլն., իսկ միւսին մէջ՝ Մանկական Պարտէզի ուսման նիւթերը։

Սենեկին մէկ անկիւնը կը տեսնուի երկու երեսով սև տախտակը, մէկ կողմը կարմիր քառակուսիներով (կէտեր ալ կ'ըլլան) և միւս կողմը զուգահեռական գիծերով ծածկուած։ Տախտակը երկու ոտքերուն վրայ հաստատուած երկայն առանցքի մը վրայ կը դառնայ։

Գրասեղաններուն առջևը դրուած են պարտիզպանուհիներուն երկու ցուցասեղանները։ Ասոնց վերին մակերեւոյթը շարժական է և շեղ դիրք մը կրնայ առնել։ Ցուցասեղանին վրայ պարտիզպանուհիք կը կազմեն տղոց իբր օրինակ ծառայող շէնքերը։

Պարտիզպանուհիներէն մէկը դաս կ'աւանդէ և միւսը կ'օգնէ կարգապահութեան և աշխատութեանց։



# ՊԱՐՏԷԶԸ

Պարտէզը Ֆրէօպէլի հաստատութեան էն կարեւոր մասն է. Հոս է որ առատ լոյսի տակ և մաքուր օդին մէջ բնութեան ծոցում, տղաք իրենց խաղերովը ու դիտողութիւններով կը կազդուրեն մարմինը և կը հարստացնեն գաղափարներու պաշարը: Հոս կը կատարուին ամառը հովանոտ ծառերուն տակ մարմնամարզական խաղերը, հոս կը խնամուին բոյսերն ու կենդանիները:

Պարտէզը երկու մասերու բաժնուած է: Ա. Մշակութեան մասը և Բ. Մարմնամարզական ու ազատ խաղերու մասը:

Առաջինը երկրորդէն բաժնուած է բարձր վանդակորմով մը: Մշակութեան բաժնին մէջ շինուած են աշակերտաց թիւին համեմատ մանր ածուներ, որոնք շրջապատուած են աւելի երկայն ու մեծ ածուներով: Մշակութեանց նախնական փորձերը մեծ ածուներուն մէջ կը կատարեն վարժուհիները և տղայք իրենց տեսածը կը գործադրեն իրենց սեփական ածուներուն մէջ: Այս բաժնին մէջ պատի մը տակ կը տեսնուի փոքրիկ մառանը որ կը պահուին տղոց ցնցուղները, բահերը, բրիչները ևլն: Ազատ խաղերու բաժնին մէջ կան խոշոր ծառեր որոց հովանիին տակ տղայք զերծ կը մնան արեւուն կիզիչ ճառագայթներէն և օդին խիստ հոսանքներէն: Ամառուան այդ օրերուն պարտէզին այդ անկիւնը խօսակցութեանց ընտիր վայր մըն է:

Պարտէզին մէջ է որ կը խնամուին նաև ընտանի կենդանիներ ու թռչուններ:

Բնութեան մէջ ազատ խաղը, առարկաներու և երեւոյթներու զննութիւնը, կենդանիներու ու բոյսերու խնամքը կ'առաջնորդեն տղուն սիրել իր միջավայրը, սիրել տիեզերքը, սիրել ամբողջ արարչագործութիւնը և անոր պատճառը՝ միակ Արարիչը՝ Բարին Աստուած:



# ՄԱՆԿԱՊԱՐՏԷԶԻ ՊԱՇՏՕՆԷՈՒԹԻՒՆԸ

*Ց'արդ ըսուածներէն յայտնի կ'երեւայ որ դեռատի տղոց դաստիարակութեան գործովը զբաղող օրիորդներէն կը պահանջուի, խորին հմտութիւն մանկավարժական-հոգեբանական գիտելիքներու, բնական պատմութեան, բնագիտութեան, առողջաբանութեան և թուաբանական ու երկրաչափական գիտելիքներու։*

*Պարտիզպանուհի մը լաւ պիտի գիտնայ իր մայրենի լեզուն, անուշ ձայն ու համակրելի արտայայտութիւն պիտի ունենայ և տեղեակ ըլլայ երաժշտութեան ու դաշնակի։ Պարտիզպանուհիք ո՛չ շատ դեռատի և ոչ ալ շատ տարեց պիտի ըլլան։ Առաջինները զուրկ են պաշտօնին պահանջները լրացնելու անհրաժեշտ յատկութիւններէն, իսկ երկրորդներուն ու մանկութեան մէջ բացուած վիհը շատ խորունկ է։ Վերջիններուն կը պակսի պատանեկան զուարթութիւնը, անխոնջ աշխատութեան և մանկական խղճերու թարմ յիշատակը։ Ըստ այսմ պարտիզպանուհիք 18էն վար և 30 տարեկանէն վեր ըլլալու չ'են։*

*Հարիւր աշակերտ պարունակող պարտէզ մը չորս պարտիզպանուհի կ'ունենայ, երկուքը* աւագ *և երկուքը՝ օգնական։ Աւագ պարտիզպանուհիներն իրենց բաժնին ղեկավարներն են, որոց կը հետեւին օգնականները։ Մանկապարտէզը ասոնցմէ զատ պիտի ունենայ նաև երկու* մայրեր *(տնտեսուհի) և տնտես մը։*

*Պատուէրներ պարտիզպանուհիներուն համար*

1. Աշակերտաց հետ ունեցած վարմանցդ մէջ մի՛ ըլլար աչառու եւ կողմնակալ:

2. Ջանա՛ որ փոխադարձ սէրն ու յարգանքը տիրեն քու եւ աշակերտացդ մէջ:

3. Միշտ խորհէ թէ՝ արդեօք դուն չե՞ս պատճառը աշակերտացդ վրայ տեսնուած թերութիւններուն:

4. Անկեղծ ու անձնուէր սիրով կապուէ անոնց հետ:

5. Մի՛ արգիլեր բան մը եթէ չի պիտի կրնաս յարատեւել արգելքիդ մէջ, քու *այո՛*ն թող *այո՛* ըլլայ եւ *ո՛չ*ը՝ *ո՛չ*:

6. Դաստիարակէ աշակերտացդ սիրտը, միտքն ու մարմինը համերաշխ ու համընթաց:

7. Բարկութեան ժամանակ—եթէ կը կարծես թէ բարկանալը ներելի է— պատիժ մի՛ որոշեր եւ ամէն անգամ խոյս տուր նպատակին հակառող պատիժներէն :

8. Գլխաւոր մտածմունքդ ըլլայ տղոց բարոյական նկարագիրը կազմել :

9. Ջանա՛ անդուլ ու յարատեւ աշակերտացդ մտաւորական պաշարը հարստացնել :

10. Դուն պէտք է փայլիս բարոյական ամէն յատկութիւններով, որովհետեւ դուն ես կաղապարը որուն վրայ պիտի ձուլուի տղոց նկարագիրը :



# ՄԱՆԿԱՊԱՐՏԷԶԻ ԴԱՍՏԻԱՐԱԿՈՒԹԵԱՆ ՄԻՋՈՑՆԵՐԸ

## Ա. ՄԱՐՄՆԱՄԱՐԶԱԿԱՆ ԽԱՂԵՐ

1. Բազկի, ձեռքերու եւ մատներու խաղեր.
2. Քալելու, ցատկելու խաղեր.
3. Շրջանի խաղեր.
4. Նմանողութեան խաղեր.

## Բ. ՄԵՔԵՆԱԿԱՆ ԶԲԱՂՈՒՄՆԵՐ ԿԱՄ ԴԻՏՈՂԱԿԱՆ ԽԱՂԵՐ

1. Գունաւոր գնտակներ . . . . . . . . . . կամ Ա. Նուէր
2. Գունտ, գլան եւ խորանարդ . . . . . » Բ. »
3. Ա. տուփ շինութեան . . . . . . . . . . » Գ. »
4. Բ. » » . . . . . . . . . . » Դ. »
5. Գ. » » . . . . . . . . . . » Ե. »
6. Դ. » » . . . . . . . . . . » Զ. »
7. Գունաւոր մակերեւոյթներ (*մոզայիք*) » Է. »
8. Ծալքի թուղթ . . . . . . . . . . . . . . » Ը. »
9. Կտրելու թուղթ . . . . . . . . . . . . » Թ. »
10. Հիւսուածք . . . . . . . . . . . . . . » Ժ. »
11. Գաւազանիկ . . . . . . . . . . . . . » ԺԱ. »
12. Օղակներ . . . . . . . . . . . . . . . » ԺԲ. »
13. Սիսեռի կամ սունկի գործ . . . . . » ԺԳ. »
14. Կաւար . . . . . . . . . . . . . . . . » ԺԴ. »
15. Երիզներ . . . . . . . . . . . . . . » ԺԵ. »
16. Դերձանի գործ . . . . . . . . . . . » ԺԶ. »
17. Գծագրութիւն . . . . . . . . . . . . » ԺԷ. »
18. Ծակոտում կամ կիտանկար . . . . . » ԺԸ. »
19. Խաւաքարտի վրայ կար . . . . . . . . » ԺԹ. »
20. Կաղապարում կաւով . . . . . . . . » Ի. »

## ԴԱՍՏԻԱՐԱԿՈՒԹԵԱՆ ՄՆԱՑԵԱԼ ՄԻՋՈՑՆԵՐԸ ԵՆ

1. Պատմութիւն եւ խօսակցութիւն.
2. Մանկական բանաստեղծութիւններ
3. Մայրենի լեզու
4. Երգ

*Ինչպէս կը տեսնուի՝ մեքենական զբաղումներուն մէջ*, Ֆրէօպէլ *ծաւալներէն գիծերու, գիծերէն՝ կէտերու և հակառակ ընթացքով կէտերէն՝ գիծերու և ծաւալներու կը հասնի։*

## Ա. ԽԱՂ

*Խաղը մանկական կեանքին հայելին է։ Խաղը տղայոց կեանքի անհրաժեշտ պայմանն է. անով կը ճանչնան իրենց* եսը, *ներքին աշխարհը, իրենց կարողութիւնները, ձիրքերը, հակումները, իղձն ու փափաքը։ Խաղով է որ տղան յարաբերութեան կը մտնէ արտաքին աշխարհին հետ, կը ծանօթանայ անոր և իր ձիրքերն ու կարողութիւնները զօրացնելու միջոցներ կը գտնէ։ Խաղին մէջ կը ծանօթանայ իր նմաններուն՝ խաղակիցներուն, կ'ստիպուի միանալ անոնց հետ, ապրիլ նոյն կեանքը, անոնց ցաւերուն վշտակից և ուրախութեանց ուրախակից կ'ըլլայ։*

*Մինչև* Ֆրէօպէլի *օրերը, ինչպէս տեսանք, խաղերը իրենց արժանի յարգը ստացած չ'էին կրթական յարկերու մէջ, թէև անոնք գոյութիւն ունէին ու կը գործածուէին, թէև մեծ մանկավարժներու ուշադրութեան առարկայ եղած էին, թէև անոնք խոր արմատներ կը նետեն մեր կեանքին մէջ վերածուելով ու ձևափոխուելով մանկութեան խաղերէն, երիտասարդութեան ու ծերութեան խաղերու։ Մարդիկ իրենց իմացական զարգացումին զանազան փուլերուն մէջ տարբեր վերաբերում կ'ունենան խաղերուն։ Տղոց համար անիկայ բոլորովին տարբեր նշանակութիւն ունի։ Անոր համար խաղը գիտութիւն և զբաղում, գործ ու զուարճութիւն, աշխատութիւն և հանգիստ է։ Խաղի մէջ առաջին անգամ երեւան կը բերեն տղայք իրենց իմացական ու ֆիզիքական կարողութիւնները։ Զուարթ ու կայտառ տղան իր ամբողջ էութեամբը կը նուիրուի խաղին, ինչպէս ապագային պիտի նուիրուի լուրջ գործին՝ բաղձալի արդեանց հասնելու համար։ Այս պատճառաւ դաստիարակին պարտքն է բարձր բռնել գործունէութեան այս իղձը և ամէն առթիւ քաջալերել կրթութեան այդ մեծ ազդակն ու սատարը։*

*Մանկական պարտէզներու մէջ խաղը կը կատարուի առանց երգի և երգով։ Վերջինը* մարզախաղ *կը կոչուի։ Մարզախաղին և մարմնամարզութեան տարբերութիւնը մեծ է. մարզախաղը երգով կը գործադրուի և շարժումները փոխ կ'առնէ իրական կեանքէն։ Որպէս զի այս խաղերը կարողանան տալ իրենցմէ սպասուած օգուտը, հարկ է որ տղայք առանց ստիպումի մասնակցին. միայն այդ պարագային խաղերը կը զարգացնեն ճարտարութիւնը, սրամտու-*

*թիւնը, ընկերսիրութիւնը, համբերութիւնը ևլն։ Սակայն անոնց կարեւորագոյն դերն է, կատարեալ հանգիստ պարգեւել ուղեղին և հաճելիօրէն գրգռել տղոց ֆիզիքական ուժերը։*

**Ֆրեօպէլ** *իր խաղերուն նիւթը կ'առնէ իրական կեանքէն, աշխատաւոր անհատին կեանքէն։*

*Մարզախաղերուն մէջ պիտի պահուին երեք կարեւոր պայմաններ.*

*Ա.— Անոնց մէջ մուտ չի պիտի գտնեն դասակարգային ու ընտանեկան անձուկ մտածումներ։*

*Բ.— Անոնց մէջ չի պիտի տեսնուի բան մը, որ չափահասներուն համար ալ դատապարտելի ըլլայ. օրինակի համար Թղթախաղը։ Նմանապէս ընդունելի չ'են այն խաղերը ուր շահամոլութիւնը դեր կը խաղայ և մէկին վնասը միւսին սփոփանք կ'առթէ։*

*Գ.— Մարզախաղերը շարժումներով պիտի կատարուին։*

*Ընկերական շրջանակի մէջ կատարուած խաղերը տղան համբերութեան կը վարժեցնեն։ Օրինակի համար ենթադրենք թէ կը խաղցուի* կատուին *ու* մկան *խաղը, ուր գործող անձերը երկու են. ամբողջին ուշադրութիւնը կեդրոնացած է երկուքին վրայ և անոնց յաջողութիւնը կամ ձախողանքը այն աստիճան կը շահագրգռէ պզտիկները, որ իրենցմէ իւրաքանչիւրը կուզէ մասնակցիլ դործին. սակայն խաղին օրէնքը կը պահանջէ որ կարգի սպասեն։ Մանր տղայք շատ շուտ կ'ըմբռնեն որ կարգի սպասելը ընկերական կեանքի անհրաժեշտ պայմաններէն մէկն է, խաղը չգիտցող տղայք կը հետեւին իրենց ընկերներուն։ Խաղը այնքա՛ն կը զարգացընէ երեւակայութիւնը, որ քանի մը հատը գործադրելէն յետոյ, տղայք ինքնին նորերը կ'ստեղծեն։*

*Մարզախաղը բոլորովին ազատ պիտի ըլլայ։ Տղու մը վրայ տեսնուած փոքրիկ յոգնութիւնը կամ ձանձրոյթը կը բաւէ զանի խաղակիցներու շարքէն հեռացնելու։*

ԱՌԱՆՑ ԵՐԳԻ ՄԱՐԶԱԽԱՂԻ ՕՐԻՆԱԿ ՄԸ

Ցորեն

*Խաղին մասնակցողները կլոր շրջան մը կը կազմեն ձեռք ձեռքի տալով. շրջանին կեդրոնը նստած է երկրագործը։ Խումբը կը դառնայ շրջանաձեւ ու կ'ըսէ.*

Լեռն է սիրուն, ջուրը անուշ,
Լերան տակի հովը անուշ,

Ցորեն ծլեր մեր դաշտերուն,
Մեր ցորենին հացն է անուշ:

*Պարը կը կանգնի ու կը հարցնէ երկրագործին.— Երկրագո՛րծ, ցորենը ցանեցի՞ր—: Երկրագործը կը պատասխանէ, արտս դեռ նոր փորեցի: Այս պատասխանիս վրայ պարը նորէն կը դառնայ շրջանաձև կրկնելով ոտանաւորը և ամէն անգամ որ կանգ առնէ կը հարցնէ:*

*— Ցորենը ցանեցի՞ր:*

*— Ցանեցի:*

*— Ցորենը բուսա՞ւ:*

*— Բուսաւ:*

*— Ցորենը գլուխ կապե՞ց*

*— Կապեց:*

*— Ցորենը դեղնեցա՞ւ:*

*— Այո՛ դեղնեցաւ. պատրաստ եղէ՛ք հնձուելու:*

*Այս խօսքին վրայ տղայք կը փախչին ամէն կողմ, երկրագործը կը հալածէ զանոնք և ով որ բռնուի նորէն երկրագործին դերը կը խաղայ:*

ԵՐԳՈՎ ՄԱՐԶԱԽԱՂ

*Երգով կատարուած մարզախաղերը չորս տեսակ են:*

*Ա. Մատներու, ձեռքի և բազկի խաղեր:*

*Բ. Քալելու և ցատկելու խաղեր:*

*Գ. Շրջանի խաղեր:*

*Դ. Նմանողութեան խաղեր:*

Ահա քանի մը օրինակներ

ԸՆՏԱՆԻՔ — Մատներու խաղ

Հայրըս՝ բոյթ մատ, ոչխար մը զենեց,
Մայրըս՝ ցուցամատ, Ջաշիկին մորթեց,
Եղբայրըս՝ միջամատ, քերթեց ու մաքրեց,
Քոյրըս՝ մատնեմատ, համեմեց եփեց,
Զարմուհին՝ ճկոյթ, նե՛մ, նե՛մ, նե՛մ ծամեց:

*Այս երգին մէջ տղայք աջ կամ ձախ ձեռքերնուն մատները*

կարգաւ կը գոցեն կամ գոցուածը կը բանան. իսկ երբ հարցը ճկոյթին գայ, առաջ ու ետ կը շարժեն ծնօտներուն շարժումը ներկայացնելու համար։

### Խօսակցութեան նիւթ

ԱՌԱՐԿԱՆԵՐ.— Հայր, մայր, եղբայր, քոյր, Զարմիկ, Զարմուհի, բթամատ, ցուցամատ, միջամատ, մատնեմատ, ճկոյթ, ոչխար, Զատիկ։

ԳՈՐԾՈՂՈՒԹԻՒՆՆԵՐ.— Գնեց, մորթեց, մաքրեց, քերթեց, ծամեց, եփեց։

ԹԻՒ.— Մէկ ոչխար, մէկ հայր, մէկ մայր, մէկ Զարմուհի, մատներ, մէկ, երկու, երեք, չորս, հինգ։

Ընտանիքին անդամներն ու անոնց պաշտօնը—համերաշխ գործունէութիւն։

### ՄԱՅՐԻԿԻՆ ԼԱԹԵՐԸ — Ձեռքի խաղ.

Արի՛ ծալլենք մեր մայրիկին,
Լաթերն աղուոր, թէ նոր, թէ հին,
Ծալլենք, ծալլենք, զանոնք ճիշդ,
Որ չունենան ծուռ ծալք միշտ։

Տղայք դէմ դէմի կայնած իրարու ձեռք կը բռնեն և առաջ ու ետ քալելով ծալլումը կը ձեւացնեն։

ԽՕՍԱԿՑՈՒԹԻՒՆ.— Հագուստներ, մայրիկին հոգածութիւնը, կար ու ձեւ, լուացք, ջուր և աճառ, հնոցն ու տաշտը, լուացարարուհին, մաքրութիւն ու կոկիկութիւն։

ԱՌԱՐԿԱՆԵՐ.— Լաթ։

ԳՈՐԾՈՂՈՒԹԻՒՆՆԵՐ.— Ծալլենք, ըլլայ, չ'ունենան։

ԹԻՒ.— Մէկէն շատ լաթեր։

### ԲԱԶԿԻ ԽԱՂ — Փայտահար

Ձմեռ հասաւ, ուժ տանք բազկին,
Փայտ կոտրտենք մեր մայրիկին
Թող տապարը կտոր, կտոր,
Զարդէ փայտեր, մանր խոշոր
Չա՛ք, փա՛ք, չա՛ք, փա՛ք, չա՛ք փա՛ք։

*ԽՕՍԱԿՑՈՒԹԻՒՆ.— Փայտահատին աշխատութիւնը, գործիքները։*

*ԱՌԱՐԿԱՆԵՐ.— Ձմեռ, բաղուկ, փայտ, տապար, կտոր։*

*ԳՈՐԾՈՂՈՒԹԻՒՆՆԵՐ.— Հատել, ուժ տանք, կոտրատենք, ջարդէ։*

*ԹԻՒ.—* Մէկ, երկու, երեք, չորս, հինգ ... ութ կտոր:

*Մենք օրինակի համար քանի մը մանր կտորներ մէջ բերենք. դաստիարակներ ասոնց շատ տեսակները կրնան գտնել ժողովրդէն մէջ և իրենց նպատակին գործածել։*

## ՀԱՄԱՉԱՓ ՔԱՅԼ, ՎԱԶՔ, ՈՍՏՈՒՄ

*Գեղեցիկ ու համաչափ քայլփոխը, ամէնէն աւելի պահանջուած բանն է Մանկապարտէզի մէջ։ Համաչափ քայլը (մէկ-մէկ, երկ-երկու, չորս-չորս) շատ ձեւեր ունի։ Տղայք քայլ կ'առնեն կող ի կող կամ ձեռք ձեռքի տուած, միանուագ առաջ կամ ետ երթալով։ Քայլփոխի ձեւերը մի առ մի նկարագրել շատ երկար պիտի ըլլար, միայն սա ըսենք որ այդ շարժումներէն առաջ անհրաժեշտ է սորվեցնել տղոց աջը, ձախը, առաջը, ետը, կողմնակի ընթացքը ևլն.։*

*Այս բոլոր շարժումներուն ղեկավարներն են պարտիզպանուհիք։ Մանկապարտէզներու մէջ քայլուածքի խաղերու ատեն տղայք իրենց մէկ ձեռքը կռնակին և միւսը ընկերին տուած պիտի ըլլան։*

### Օ՛Ն ԱՌԱՋ

Օ՛ն, առաջ, օ՛ն առաջ,
Դէ՛հ, քայլ առնենք ձախ ու աջ,
Օ՛ն, առաջ, քաջալանջ,
Զոյգ, զոյգ քալենք աղջիկ, մանչ:

Անցաւ ցերեկն ա՛լ աւաղ,
Գիշերն հասաւ անյապաղ
Գիշեր, ցերեկ, լոյս, խաւար.
Կը յաջորդեն միշտ իրար:

Գարուն կուգայ նախ սփռել
Ծաղիկները բիւր, անբաւ,
Ապա ամառ, աշուն, ձմեռ,
Կը յաջորդեն միշտ կարգաւ.

Զոյգ մը կ'երթայ առջեւէն,
Կը հետեւինք մենք անքակ.
Նոյնը միշտ կը գործադրեն,
Գիշեր, ցերեկ, եղանակ:

*ԽՕՍԱԿՑՈՒԹԻՒՆ.— Ժամանակին բաժանումը: Տարիներու, ամիսներու և օրերու յաջորդութիւնը: Եղանակներ: Ամրան և ձըմ-րան հաճոյքները: Ձիւն, կարկուտ, անձրեւ, հով, որոտում, փայլակ:*

*ԱՌԱՐԿԱՆԵՐ.— Քայլ, լանջ, օր, գիշեր, ցերեկ, լոյս, խա-ւար, գարուն, ամառ, աշուն, ձմեռ, ծաղիկ, կարգ:*

*ԳՈՐԾՈՂՈՒԹԻՒՆ.— Անցնիլ, քալել, համնիլ, յաջորդել, ափռել, երթալ, հետեւիլ, գործադրել:*

*ԹԻՒ.— Մէկ զոյգ = երկու, երկու զոյգ = չորս...: Վեց օր աշխատութիւն, մէկ օր հանգիստ: Շաբաթ=7 օր: Չորս եղանակ:*

### ՃԱՄԲՈՐԴԵՆՔ

Օդն է զով, հովն առուակ
Կը մրնջեն ներդաշնակ,
Ճամբորդենք սարն ի վեր
Ձեռք ձեռքի անվեհեր:

Թող մեր երգ մեղմանուշ
Արձագանք տայ քնքուշ
Միշտ քայլենք զոյգ առ զոյգ
Ա՛յս ըլլայ մեր հաճոյք:

*ԽՕՍԱԿՑՈՒԹԻՒՆ.— (Ըստ մեթոտի):*

### ՎԱԶՔԻ ԵՒ ՈՍՏՈՒՄԻ ԽԱՂԵՐ

*Վազքի և ոստումի խաղերը բաւական յոգնեցուցիչ ըլլալով շնչարգելութիւն կը պատճառեն. ուստի այս խաղերուն մէջ շատ անգամ երգը զանց կ'առնուի կամ շարժման մասնակցողները չ'են երգեր: Օրինակ.*

### ԿԱՏՈՒ ԵՒ ՄՈՒԿ

Ճերմակ փիսիկ, ի՞նչ յուշիկ,
Կուզայ բռնել մեր մկնիկ.
Բայց մուկն առաւ ձայն թաթերուն,
Փախաւ գնաց շուտով հեռուն:

Փախիր, սիրուն խեղճ մկնիկ,
Վազէ մեր տան բոլորտիք.
Կատուն կուգայ արագ, արագ,
Բռնելու քեզ թաթերուն տակ,

*Տղայք ձեռք ձեռքի տալով շրջան մը կը կազմեն. մէկը մէջտեղը կը նստի իբր մուկ, ուրիշ մը դուրսը կը դառնայ իբր կատու։ Բոլոր ձեռքերը կը բարձրանան և խոշոր անցքեր կը թողուն շրջանէն ներս։ Մուկը որ այլ ևս լաւ պաշտպանուած չ'է, դուրս կ'ելնէ ծակէն մինչ կատուն ներս մտնելով զանի կը հալածէ. մուկը դուրս կը փախչի, կատուն կը հետապնդէ։ Խաղը կը շարունակուի, մինչև որ կատուն բռնէ մուկը։*

## ՈՍՏՈՒՄԻ ԽԱՂ

*Այս կարգի վարժութեանց շատ կը յարմարին մանկավարժական երգարաններու մէջ տեսնուած՝ գորտին, ծերին ու նապաստակին երգերը։*

### ԳՈՐՏԵՐ

Գորտերն ազատ լճակին մէջ
Ուրախ՝ կ'ընեն միշտ ելեւէջ
Ու իրիկուան վերջալոյսին
Կ'երգեն իրենց քի՛, քի՛, ռէ՛, քի՛ն:
Քիքի ռէ՛ քի, ռու քու ռու՛ քու քու
Քուա՛, քուա՛, քուա՛, քուա՛, քուա՛, քուա՛:

### ՆԱՊԱՍՏԱԿՆԵՐ

Տասը փոքրիկ նապաստակ
Մեր անտառին ծառին տակ
Ցատկեն զուարթ եւ ուրախ
Փորերնին կուշտ, սիրտն անվախ:

Նապաստակներ տեսաւ հոն
Մեր որսորդը ժիր, գործօն,.
Քաշեց բլթակն ու զարկաւ,
Վա՛շ, խեղճերու առթեց ցաւ:

Այս խաղերուն մէջ ամբողջ խումբը կամ խումբին մէկ մասը ակնարկուած կենդանիներուն շարժումը կը կատարէ, մինչ մնացեալ մասը դաստիարակին հետ կ'երգէ։

# ՇՐՋԱՆԻ ԽԱՂԵՐ

Ինչպէս մանկապարտէզի բոլոր խաղերուն, նմանապէս ասոնց մէջ դպրոցական խստութիւն գործ դնելու հարկ չիկայ։ Ընկերական խաղերու մէջ, խաղին օրէնքին ամէն ոք կը հպատակի։

Օրէնքը՝ խաղին գաղափարը, անտեսանելի և անբաժան միութիւնն է։ Տեսանելի և արտաքին զանազանութիւնը երևան կուգայ բոլոր խաղացողներուն վրայ, որոց իւրաքանչիւրը իր անհատականութիւնն ունի։

Միութիւն, զանազանութիւն և անհատականութիւն. ահա երեք տարրեր որոնք բուն մարզախաղերուն երեք բնորոշ գիծերը կը ներկայացնեն։ Շրջանի խաղերուն մէջ երբ տղայ մը իր ընկերներէն կը զատուի, տարբեր շարժում մը ընելու համար. կարծես կ'ստանայ անզգալաբար տպաւորութիւնը այն յարաբերութեանց, որոնք գոյութիւն ունին անհատին ու ամբողջութեան, կեդրոնին ու շրջագծին, մասնաւորին ու ընդհանուրին մէջ։ Խաղին ոգին կը պահանջէ որ տղան իրեն յատուկ դերը կատարելով հանդերձ, ընդհանուրին հետ իր համերաշխ գործակցութիւնը պահէ։ Անհատը ազատ է, բայց միութեան ընդհանուր օրէնքի սահմանին մէջ, ան ամբողջութիւն մըն է ինքն իր մէջ, բայց միևնոյն ժամանակ մասն է ամբողջին։ Անհատը կատարեալ անկախութիւն կը վայելէ, բայց իր ամենափոքր շարժումներուն մէջ անգամ—ինչպէս քալուածքը— ենթակայ է չափին, օրէնքին, դաշնաւորութեան։ Ամէն տեսակ խաղերու մէջ, պարզ թէ բաղադրեալ տղայք սիրով կը հպատակին օրէնքին։ Դաստիարակութիւնը կեանքին պատրաստութիւնն ըլլալով՝ կրնանք ըսել որ, այս ընթացքով տղան կը բարձրանայ իր վայրենի վիճակէն քաղաքացիի աստիճանին։

Մէն մի խաղի գործադրութիւն ունի իր նախնական պատրաստութիւնները։ Պարտիզպանուհին փոքրիկ խօսակցութիւն մը կը բանայ խաղին գաղափարը վեր հանելու համար։ Տղոց մէջ կ'արթննայ փափաքը երևակայուած շարժումները կատարելու։ Այդ պարագային տղոց կը պատմենք երգին խօսքերը. անոնք կը փա-

*փաքին գոց սորվիլ։ վերջապէս դաստիարակը կ՚երգէ երգը որ-կուզայ վառել աշակերտաց փափաքը, խնդրոյ առարկայ եղող խաղն ու երգը գործադրելու։ Ա՛լ հասած է վայրկեանը որ խորհրդակցութիւն մը կատարուի տղոց հետ, թէ ինչպէս պիտի կատարուի խաղը և ինչ օրէնքներու պիտի հպատակի իւրաքանչիւրոք։ Տղայոց հետ խորհրդով որոշուած օրէնքը անքակտելի է։ Բոլոր այս պատրաստութիւնները կը վառեն հետաքրքրութիւնը տղայոց, որոնք լաւ մը ըմբռնած են խաղին բուն ոգին.*

*Այս ընթացքով դիւրին է իրական կեանքի զանազան երեւոյթներուն վրայ խաղեր յօրինել։ Օրինակ.*

ԱՂԱՒՆԻՆԵՐ

Բանանք մենք դուռն աղաւնետան
Աղաւնիներ զուարթ խայտան:
Դաշտ ու պարտէզ, մարգեր, անտառ,
Կը ոստոստեն թռչունք կայտառ:

Փըչեց զեփիւռն երեկոյեան,
Աղաւնիներ ալ տուն դարձան:
Ամէնն ահա հոն ներս մըտան,
Գոցենք մենք դուռն աղաւնետան:

*Աշակերտաց շրջանաձեւ պարին մէջ աղաւնիները նստած կը մնչեն «Վո՜ւ, վո՜ւ, վո՜ւ»։ Երգը սկսուածին պէս շրջանը կ՚ընդարձակուի և ձեռքերը կը բարձրանան։ «Աղաւնիներ զուարթ խայտան» ըսուած ժամանակ աղաւնիները ամէնը մէյմէկ ծակէ դուրս կը թռչին։ «Ներս մտան» խօսքին՝ աղաւնիները ներս կը խուժեն ու շրջանակը կը սեղմուի - աղաւնետունը կը գոցուի։*

*ԽՕՍԱԿՑՈՒԹԻՒՆ.— Աղաւնիներ, եկեղեցւոյ արծաթ աղաւնին, ջրօրհնէք, մեռոն-թափ։*

ՆՄԱՆՈՂՈՒԹԵԱՆ ԵՐԳԵՐ

*Նմանողութեան երգերն անոնք են, որոնց մէջ տղայք զանազան անձերու, առարկաներու և կենդանիներու դերը կը կատարեն։ Նմանողութեան երգերու մէջ շատ գեղեցիկ են.* Երաժիշտները, մեղուները, ծիածանը, երկրագործը, տնարարութիւն, թրթուրը, երկաթագործը, ծխանաջինջը, արհեստաւորները *ևլն.*։

## ՉՈՐՍԷՆ ՎԵՑ ՏԱՐԵԿԱՆ ՏՂՈՑ ԴԱՍՏԻԱՐԱԿՈՒԹԻՒՆԸ

**Ֆրէօպէլի Գ.** *Նուէրը (Տախտակ Գ. Դ.)*
» Դ. » ( » Ե.)

*Աւելի առաջ տեսանք որ մինչև չորս տարեկան տղոց համար* **Ֆրէօպէլի** *կրթական նիւթը աղքատ էր այդ հասակի տղոց իմացական ու բարոյական դաստիարակութեան համար։ Ասոր բոլորովին հակառակը կը տեսնուի այս հասակի տղոց յատկացուած խաղերուն ու խաղալիկներուն մէջ։ Այս տեղ նիւթի այլազանութիւնն ու հարըստութիւնը այնքան աչքառու է, որ ձախող գործածութիւնը կրնայ ծանրաբեռնել տղոց միտքը։ Ուստի ուշադիր ըլլալու է որ տղայք չի բռնադատուին ծանրածանր աշխատութեանց, ու չի վնասուի անոնց ազատ զարգացումը։*

*Պարտիզպանուհիք զիրար գերազանցելու անյագ փափաք մը ունին, որքան հնար է շուտով և ի գին ամէն զոհողութեանց, արագ սորվեցնել* **Ֆրէօպէլի** *բոլոր նուէրները, յաջորդաբար մշակել բոլոր մեքենական զբաղումները, հոն տեսնելով տղոց զարգացման ու երջանկութեան միակ գրաւականը։*

**Ֆրէօպէլի Գ.** *նուէրը մեծ խորանարդ մըն է* 8 *խորանարդիկներու բաժնուած, իսկ Դ. նուէրը դարձեալ խորանարդ մըն է* 8 *զուգահեռաններու կամ աղիւսներու վերածուած։ Երկու նուէրներն ալ կը ծառայեն իբր նիւթ շինութեան։*

*Շինութեանց այս նիւթը կը ծառայէ վերարտադրելու.*

1.— **Կեանքի ձեւեր**, (*Միջավայրէն առնուած*)

2.— **Գեղեցկագիտական ձեւեր**

3. **Թուաբանական ձեւեր**, *Թուերու յարաբերութիւնը ըմբռնելու համար։*

*Շինութեան մէջ պիտի օրինակուին միայն այն բաները, զորս տղան* **տեսած է** *կամ* **կը տեսնէ իր աչքին առջեւ.** *վերջին բառերը կ'ստորագծենք վասն զի շատեր տղայոց բոլորովին անծանօթ բաներ շինել կուտան. ինչպէս՝* **յաղթական կամար, փագոդի, թատրոնին սիւնազարդ դուռը, դղեակ** *ևլն.։*

*Շինութեանց մէջ երկու կանոն կայ որ պիտի պահուի։*

*Ա. Շէնքի մը համար ամբողջ շինուածանիւթը պիտի գործածուի։*

*Բ. Շէնք մը երբէք չի պիտի աւրուի այլ մասնակի փոփոխութիւններով նոր շէնքի մը պիտի վերածուի։*

*Այս օրէնքին համեմատ փոքր խորանարդները այնպէս մը կը շարենք որ մեծ խորանարդ մը կազմուի։ Եթէ մէկ ծայրէն խորանարդ մը վերցնենք ու հակառակ կողմը դնենք՝ կ՚ունենանք բազկաթոռ մը. դարձեալ եթէ խորանարդ մը առնենք ու նախորդ վերցուցածնուս քով դնենք կ՚ունենանք բազմոց մը (Տես տախտակ Դ.), որ երկուքի բաժնելով կ՚ստանանք երկու աթոռներ։ Այսպէս ուրեմն շէնքը առանց աւրելու թեթեւ փոփոխութեանց կենթարկենք որով ձեւերու անվերջ շարք մը կ՚ունենանք։ Բան մը չինուածին պէս պէտք է հարցնել տղուն թէ ի՞նչ բանի կը ծառայէ անիկայ, ու անոր վրայ շահաւոր խօսակցութիւն մը բանալ։ Գեղեցկագիտական ձեւերու մէջ ալ աւրելը արգիլուած է։ Այս վերջինները տղուն աչքը գեղեցիկ ձեւերու, համաչափութեան կը վարժեցնեն։ Թուաբանական ձեւերը կը գործածուին թիւերու որոշ սահմանի մը մէջ շօշափելի նիւթերով չորս գործողութեանց վարժութիւններ ընելու համար։*

*Դ. Նուէրը խորանարդիկներէն վերջը կը տրուի։ Նախ բաղդատութեան կը դրուին աղիւսներն ու խորանարդները, անոնց նմանութիւններն ու տարբերութիւնները գտնելու համար։ Շինութեանց պայմաններն ու խօսակցութեան անհրաժեշտ պէտքը կը շեշտենք նաեւ այս նուէրին համար։ Դ. նուէրով նմանապէս պիտի շինուին* Կեանքի, գեղեցկութեան ու թուագիտութեան *ձեւեր։*

## Գ. ՆՈՒԷՐ

*Պարտիզպանուհին ցուցասեղանին վրայ կը դնէ Գ. նուէրին տուփը և կ՚ըսէ։ Այսօր ձեզի սիրուն խաղալիկ մը բերի որովհետեւ շատ գոհ մնացի բարի վարքերնէդ։ Ասի մեր Գ. խաղալիկն է։ Ըսէ՛, Արամ՛քս, ի՞նչ ձեւ ունի այս տուփը։ —Խորանարդի։ Քանի՞ երես ունի, համրենք։ —Մէկ, երկու, երեք, ...վեց երես։ Քանի՞ անկիւն ունի։ —Ութ։ Քանի՞ կող ունի, համրենք։ —Տասներկու։ Ուրեմն մեր խորանարդը 6 երես, 8 անկիւն և 12 կողեր ունի։ Խորանարդին ո՞ր երեսը աւելի լաւ կը տեսնէք։ —Առջեւինը։ Ո՞րը չէք տեսներ։ —Ետեւինը։ Ո՞ր երեսները քիչ կը տեսնէք։ —Աջն ու ձախը։ Երեսներէն ո՞րը աւելի մեծ է։ —Ամէնն ալ հաւասար են։ Խորանարդին երեսները ի՞նչ ձեւ ունին։ —Քառակուսի։*

Տղա՛ք, հիմայ պիտի հանեմ մէջի խաղալիկը, նայեցէք։ Պարտիզպանուհին ուշադրութեամբ կը պարպէ տուփին մէջինը։ Տղաք միաբերան կը պոռան խնդալով, խորանա՛րդ, խորանա՛րդ։

Ըսէ՛ք տեսնեմ այս խորանարդը քանի՞ անգամ կտրուած է վերէն վար, աջէն ձախ։— Մէյմէկ անգամ։

Պարտիզպանուհին վրայի մասը կը վերցնէ ամբողջ և տակի մասէն քիչ մը հեռու կը դնէ։ Ըսէ՛ք, տեսնեմ քանի՞ կտոր եղաւ։ —Երկու։ Այս կտորը խորանարդին ո՞ր մասն է։ — Կէսը։ Երկու կէսերը եթէ միացնեմ ի՞նչ կունենամ։ —Ամբողջ խորանարդ մը։

Դարձեալ պիտի բաժնեմ երկու մասի, աջ ու ձախ. քանի՞ կէս ունիմ։ —Երկու։ Միացուցի, ի՞նչ եղաւ։ —Ամբողջ մը։ Մէկ ամբողջը քանի՞ կէս կ'ըլլայ։ —Երկու կէս։

Պարտիզպանուհին կէսերն ալ իրենց կարգին կը կիսէ։ Այս մասը խորանարդին ի՞նչն է։ —Այդ մասը խորանարդին քառորդն է։ Քանի՞ քառորդ ունիմ։ — Չորս քառորդ։ Երկու քառորդ կ'ընէ մէկ կէս։ Երկու կէս=Մէկ ամբողջ։

Առաջին անգամ այսքան ծանօթութիւն կը բաւէ, որմէ յետոյ աշակերտաց իւրաքանչիւրին Գ. նուէրի տուփերէն մէյմէկ հատ կը բաժնուի։ Վարժուհին իր ըրած վարժութիւնները տղոց կրկնել կուտայ։

Մէկ ամբողջ= Երկու կէս։ Մէկ կէս= Երկու քառորդ։ Երկու կէս =Չորս քառորդ։ Մէկ ամբողջ = 4 քառորդ։ Չորս քառորդ =Մէկ ամբողջ։ Այնուհետև խորանարդը 8 մասերու կը բաժնուի և տղայք կը հասկնան որ մէկ խորանարդիկը մեծ խորանարդին $\frac{1}{8}$ն է։ Տղաք, համրենք տեսնենք քանի՞ ութերորդ ունի մեծ խորանարդը։ —Ութը ութերորդ։ Ամբողջ խորանարդը երկու կէս ըրէք։ Երկու կէսերը՝ չորս քառորդ։ Չորս քառորդները՝ ութ ութերորդ։ Երկու ութերորդ՝ մէկ քառորդ, երկու ութերորդ՝ մէկ քառորդ, երկու ութերորդ՝ մէկ քառորդ, երկու ութերորդ՝ մէկ քառորդ։ Դարձեալ միացուցէ՛ք, երկու քառորդ' մէկ կէս. երկու քառորդ՝ մէկ կէս. երկու կէս՝ մէկ ամբողջ։ Մէկ ամբողջին մէջ կայ երկու կէս, չորս քառորդ, ութը ութերորդ։

Տուփին պարունակութիւնը լաւ մը ծանօթացնելէ յետոյ շինել կուտանք կեանքի ձեւեր — Սեղան, աթոռ, երկու աթոռ, անկողին, պահարան, բազմոց, բազկաթոռ, վառարան, երկու խաչ, ջրհոր ևլն։ (Տես տախտակ Գ.)։

*է՛, տղա՛ք, կուզէ՞ք շինել սա աթոռը։ Լաւ դիտեցէք։ Ի՞նչ բանի կը ծառայէ աթոռը։—Նստելու։ Ուրեմն նստելու տեղը պիտի շինուի և կրթնելու համար յենարան մը։*

*Տղայք ուշադրութեամբ կը դիտեն աթոռը ու կ՚աշխատին անոր ձեւը շինել, նախ կը դժուարանան բայց վարժուհին օգնութեամբ կը հասնի և գործը կը լրանայ։*

*—Ա՜խ, օրիորդ, ի՞նչ աղւոր աթոռ է. ճիշտ մերինին կը նմանի։*

*—Ո՛չ, բոլորովին նման չ՚է, Վահէ՛, նայէ ի՞նչ տարբերութիւն կայ աթոռին ու քու շինածիդ մէջ։*

*Տղան կը տեսնէ որ իր աթոռը նստոցի հիւսք և ոտքեր չ՚ունի, կը հասկնայ որ առարկայի մը ձեւը կազմելու համար պէտք է օրինակել էն կարեւոր մասերը. ինչպէս աթոռին նստոցն ու յենարանը։ Այսպէս տղայք երկու աշխատութիւն կ՚ունենան,*

1.— *Կեանքի ձեւ մը կազմած ատեննին լաւ դիտել թէ որո՞նք են էն էական ո կարեւոր մասերը։*

2. *Շինելէ յետոյ բաղդատել շինուածը օրինակին հետ։*

*Հիմայ ի՞նչ պիտի շինենք կը հարցնէ տղոց մէկը։ Նախ էն կարեւորները, կ՚ըսենք, որ մեր տան մէջ կը գտնուին։ Մտածէ՛, ի՞նչ կ՚ընենք մենք առաւօտէն մինչև երեկոյ ու ապա գիշերը։ —Կ՚աշխատինք, կ՚ուտենք, կը քնանանք։ Առանց քունի մարդս չ՚ապրիր, օրուան տաժանելի աշխատութիւններէն յետոյ պէտք է հանգստանալ։ Մեզի պէտք է սեղան մը, աթոռ մը և անկողին մը։ Միտքդ բեր, Արա՛, քու անկողինդ ի՞նչպէս է. անոր երկու կողմերը վանդակներ կան վար չ՚իյնալու համար։ Ինչո՞ւ սանկ եղաւ։ Ես կ՚ուզէի կատարեալ անկողին մը շինել բայց խորանարդ չի մնաց։ —Այդ անկարելի է, մինչև իսկ եթէ խորանարդներ ալ ունենայիր դարձեալ քու անկողնիդ պէս չի պիտի ըլլար։ — Ինչո՞ւ. ասի քիչ մը փոքր պիտի ըլլայ, աւելի լաւ։ —Բայց դարձեալ քու անկողնիդ բոլորովին նման չ՚ըլլար։ — Ա՛խ, այո՛, օրիորդ, (տղան կը յիշէ) ոտքեր չ՚ունենար, հիւսքը պակաս է որուն վրայ մայրիկս խոտկուռը կը դնէ... է՜հ, թող ասիկայ ալ գիւղական անկողին մը ըլլայ։*

*Ուրիշ առթիւ կը հասկցնենք որ միշտ այն սենեկին մէջ ապրող մարդ մը անհրաժեշտ առարկաներ կ՚ունենայ, որոնց համար պահարան մը պէտք է։ Տղան կ՚սկսի զանազանել կեանքի անհրա-*

*մեչտ առարկաները զարդի յատուկ առարկաներէն, ու կը չինէ պահարաններ, դարակներ, սնտուկներ, բազմոց բազկաթոռ ևլն.: Այս աշխատութեանց կարեւոր պայմաններն են* ճաշակ և ճշդութիւն:

*Դուք ըսիք թէ սեղանին վրայ կ'աշխատին ու կ'ուտեն. բայց ես կը յիշեմ որ սեղանին չուրջը նստողները ուրիշ բան մըն ալ կ'ընեն... երբ մեծերը միմիայն նստին՝ գիրք կը կարդան, իսկ երբ պզտիկներ ալ գտնուին մեծերուն անոնց հանելուկներ կ'առաջարկեն, հէքեաթներ կը պատմեն:*

*—Օրիորդ, դուք ալ մեզի պատմեցէք, կ'աղաչենք:*

*Եթէ չորս տարեկանէն պզտիկ տղոց համար հանելուկները կանխահաս կը սեպուին, այս հասակին համար անոնք կրնան օգտակար ըլլալ ու մարզել միտքը: Ամէն հասակ իր խաղն ու զբաղումը ունի և տղայք կը ձանձրանան, կը թմրին եթէ երեւակայութիւնը չ'զբաղի իրեն յատուկ սնունդով: Այս հասակի տղայք չափազանց կ'ուրախանան երբ ծնողներ կամ դաստիարակներ մտերմութեամբ կը խօսակցին անոնց հետ, պատմութիւններ կը պատմեն, հանելուկներ կ'առաջարկեն, Հանելուկները որոնք անչուշտ մեր կեանքէն առնուած են կը ծանօթացնեն տղան նաև մայրենի լեզուի դարձուածներուն:*

*—Հիմայ ես ձեզի հանելուկ մը պիտի ըսեմ նայիմ ո՞վ պիտի գտնէ:*

*«Չորս եղբայրներ մէկ գլխարկի տակ: — Ի՞նչ է արդեօք, կը հասկնամ բայց չ'եմ կրնար ըսել:*

*—Եթէ հասկնաս կ'ըսես, նայէ անկէ երկու հատ կայ այս սենեակին մէջ: Սեղան կը պոռան աշակերտները մէկէն ի մէկ:*

*—Ըսէ՛ք, տեսնեմ ի՛նչ է «Չորս կողմը փուշ, միջուկը նուշ»:*
*— Աչք:*

*Այո՛, աչքին չորս կողմը թարթիչներ կան կոպերուն վրայ, անոնք փուշի նման կը պատեն աչքը որ նուշի ձեւով պառկած է անոնց մէջ:*

*Քանի՛ տաշես կը հաստնայ, քանի կտրես կ'երկննայ: — Այդ շատ դժուար է ի՞նչ է արդեօք:*

*— Մեր պարտէզին մէջ ունինք, ամառը կը գործածենք:* Հor *կը պռայ տղուն մէկը:*

*Այո՛, ջրհորը, որ հողին մէջ կը փորեն գործաւորները: Քանի փորեն խորութիւնը կ'աւելնայ, չորս կողմէն ալ որչափ տաշեն՝ լայ-*

*Նութիւնը կ'աւելնայ անոր համար ըսեր են— քանի կտրես կ'երկըննայ, քանի տաշես կը հաստնայ։*

*Հանելուկներ շատ կան, բայց ամէն հանելուկ չ'առաջարկուիր. անոնցմէ շատերը մտայածին առարկաներու շուրջը կը դառնան, գուեհիկ բացատրութիւններով։ Հանելուկին նիւթը տղուն ծանօթ ըլլալու է։*

*Խորանարդիկներու զբաղումը.— Առարկաներ, գեղեցիկ ձեւեր, թուագիտական ձեւեր, խօսակցութիւն, հանելուկ, այս ամէնը* 40—45 *վայրկեանէն աւելի չի պիտի տեւեն։ Գեղեցիկ ձեւերը խրատմէ կը բղխին այսպէս. բոլոր խորանարդները կը դրուին սեղանին վրայ այնպէս՝ որ չորս հատով քառակուսի մը կազմուի և միւս չորսը քառակուսիին չորս կողերուն կը միացնեն (Տախտակ Զ. Թիւ* 1)*։ Վերջին անգամ դրուած չորս խորանարդները պարբերաբար կը շարժեն կէս կէս խորանարդ դէպի առաջ և այդ շարժումէն զանազան ձեւեր առաջ կուգան։ Թուաբանական վարժութիւնները զննական կերպով չորս գործողութեանց շուրջը պիտի դառնան մինչև* 8 *թիւերով։*

## Դ. ՆՈՒԷՐ

*Դաստառուն հանդիսաւոր լռութեան մէջ գոգնոցին տակէն դուրս կը հանէ Դ. Նուէրի տուփը և կ'ըսէ, ահա ձեզի դարձեալ խաղալիկ մը նուէր ձեր բարի վարքին, աշխատասիրութեան ու քաղաքավարութեան համար։ Տեսէ՛ք, ի՞նչ ձեւ ունի։ —Խորանարդի։ Դաստառուն կրկնել կուտայ երեսները, կողերը, անկիւնները։ Քանի՞ երեսներով շինուած են այդ անկիւնները։ —Երեք երեսներով։ Երեք երեսով շինուած անկիւնները* եռակողմ *կ'ըսուին։*

*—Ահա պարպեցի տուփը։ Քանի՞ անգամ կտրուած է վերէն վար, աջէն ձախ։ (Դ. Նուէրի վարժութիւնները կէս, քառորդ, ութերորդ)։*

*Պարտիզպանուհին ձեռքը կը բռնէ աղիւս մը ու կ'ըսէ։ —Ասիկայ խորանարդին կը նմանի՞։ —Ոչ։ Բայց եթէ լաւ դիտէք պիտի տեսնէք որ բաներ կան որ երկուքն ալ ունին հաւասարապէս։ (Համրել կուտայ երեսները, անկիւնները, կողերը). Հիմայ կրնանք ըսել թէ ինչո՞վ իրարու կը նմանին աղիւսն ու խորանարդը։*

*Խորանարդն ալ* 6 *երես ունի աղիւսն ալ*
» » 8 *անկիւն* » » »
» » 12 *կող* » » »

*Խորանարդն ալ փայտէ շինուած է, աղիւսն ալ։*

*Հիմայ տեսնենք թէ ի՞նչ տարբերութիւններ կան խորանարդին ու աղիւսին մէջ։*

*Խորանարդին երեսները հաւասար են, աղիւսիններունը հաւասար չեն։ Աղիւսին ո՞ր երեսները իրարու հաւասար են։ Վրայի և տակի երեսները, աջն ու ձախը, առջևի և ետևի երեսները զոյգ զոյգ իրարու հաւասար են։ Աջ ու ձախ երեսներուն՝* պզտիկ *երեսներ կ'ըսենք, առջևի և ետևի երեսներուն՝* միջակ *և վրայի ու տակի երեսներուն՝* մեծ *երեսներ կ'ըսենք, Աղիւսը ունի 2 պզտիկ, 2 միջակ և 2 մեծ երես։*

*2 Պզտիկ երես = 1 միջակ երես։ 4 պզտիկ երես = 1 մեծ երես։ 2 միջակ երես = 1 մեծ երես։*

*Դ. Նուէրին վրայ այսքան ծանօթութիւն տալէն յետոյ կ'անցնինք կեանքի ձևերուն։ Զրոյցներ, պատմութիւններ ու հանելուկներ անբաժան են կեանքի ձևերէն։*

*Գեղեցիկ ձևերը Դ. Նուէրի ուղղութեամբ (Տես տախտակ Զ. գեղ. ձևեր Գ. և Դ. Նուէրներով)։ Այս շրջանին մէջ թուաբանական վարժութիւնք դարձեալ 1—8 թիւերով պիտի ըլլան. վերացական ո և է բան արգիլուած է, գործողութիւններէն չորսն ալ իրենց բաժինը պիտի ունենան. զբաղման ժամանակը քիչ մ'աւելի կրնայ երկարիլ(1)։*

*Պատմութիւններ ու խօսակցութիւններ կազդուրող դեր մը կը կատարեն թուաբանական վարժութիւններէն յետոյ, որոնք բաւական կը լարեն տղոց ուշադրութիւնը։ Երբ տղան հինգ տարեկան ըլլայ ո՛չ միայն կարելի, այլ նոյն իսկ անհրաժեշտ է խօսակցութիւններէն զատ երբեմն պատմել նաև հէքեաթներ։ Ջուր տեղը կ'աշխատին կարգ մը մանկավարժներ ապացուցանելու համար թէ՝ հէքեաթները բնութեան վրայ կեղծ գաղափար մը կուտան։ Անիկայ Պարտէզի տղոց համար չ'է որոնք ամէն ժամանակ իրական գաղափարներ կ'ստանան բնութեան և երևոյթներու վրայ։ Մենք չ'ենք ուրանար թէ հէքեաթները աւելի կը վնասեն քան թէ կը նպաստեն տղոց զարգացման եթէ դաստիարակներ չեն գիտեր օգտուիլ անոնցմէ։*

---

(1) Շուտով լոյս կը տեսնէ «Մայրիկին Թուաբանութիւնը» ուր պարտիզպանուհիք առատ նիւթ պիտի գտնեն թուաբանական ձևերու։

Երբեք տղոյ պատմուելու չեն այնպիսի հէքեաթներ, ուր վախազդող, սարսռեցուցիչ յ'րի բանքներ կը վխտան։ Մենք ունինք տոհմային հէքեաթներ, որոնց մէջ բանաստեղծական քօղի մը տակ ծածկուած են կեանքի անհերքելի ճշմարտութիւններ, հաստատ խորհուրդներ, բնութեան կենդանի և վառ նկարագրութիւններ։

Հէքեաթները գրաւիչ բնոյթ մը ունին. չափահասներն իսկ մեծ սիրով կը լսեն ու կը կարդան ժողովուրդին ընտիր հէքեաթները։ Ու միթէ կարելի՞ է ուրանալ անոնց օգտակարութիւնը, երբ անոնց մէջ քայլ կը հանդիպի գեղակերտ ու պատկերաւոր բնիկ դարձուածքներու, բնորոշ ու սրամիտ մակդիրներու, սեղմ ու զօրաւոր առածներու ևլն.։ Հէքեաթները կը զարգացնեն լեզուն, հնարամտութիւնը, բանաստեղծութիւնը, երեւակայութիւնը. կը ծանօթացնեն մարդոց ու կենդանեաց բնաւորութեան էն նուրբ գիծերը, կը նպաստեն մարդասէր ու արդարասէր զգացմանց զարգացումին, կ'արթնցնեն կարեկցութիւնը՝ թշուառին ու հարստահարուածին, սէր՝ ազատին, զզուանք՝ կեղծաւորութեան, խարդախութեան, ստութեան, չարութեան հանդէպ ևլն.։ Սակայն այս արդիւնքը ձեռք կը բերուի միայն ճաշակով ընտրուած հէքեաթներէն(1), որոնք կ'ունենան ձեռնհաս ու կարող դաստիարակէ մը։ Վնասակար են այն հէքեաթները ուր դեւեր, սատանաներ, ու մեռելներ դեր կը խաղան,. ուր գովուած են մարդոց յոռի յատկութիւնները, ուր անբարոյ արարքներ կը ջատագովուին։ Ընդունելի չեն նաև կարգ մը հէքեաթներ ուր տղոյ համար անըմբռնելի հանրային թերութիւններ ձաղկուած են։ Առարկողներ կան թէ բարիին վարձատրութիւնը և չարին պատիժը որոնք հէքեաթներու մէջ կը պատահին ամէն անգամ այնքան չեն համապատասխաներ կեանքի ճշմարտութեան, որ դաստիարակին գլխաւոր նպատակը պիտի ըլլայ։ Եթէ տղան ազդուի հէքեաթներէն միայն վարձատրութեան համար բարի պիտի ըլլայ....։ Իրաւունք ունին սակայն, հէքեաթի մը օգուտը բաղդատելով վնասին այնքան մեծ է, որ այդ փոքր չարիքին կարելի է աչք գոցել, մանաւանդ որ տղայք շուտով կը հասկնան թէ՝ այդ կարգի վարձատրութիւններ ու պատիժներ միայն հէքեաթներու մէջ գոյութիւն ունին։ Անոնց մէջ բարին ու առաքինին իրր վարձք կ'ստանան մեծաքանակ գործեր, դղեակներ, հրեղէն ձիեր որոնք իրենց սլացքին

(1) Տես «Մանկական Պարտէզ» ընթերցարան Կ. Վ. Պալայեան

*մէջ ամպերու հետ կը խաղան։ Հոն ուղղութիւնը, բարութիւնը, արդարութիւնը, հեզութիւնը, համբերութիւնը, աշխատութիւնը և բնաւորութեան ուրիշ գեղեցիկ գիծերն այնքան համակրելի գոյներով նկարուած են, որ անոնց ազդեցութիւնը անջինջ կը մնայ յաւիտեան մանուկ սիրտերու մէջ։*

*Հէքեաթներու ծանօթութիւնը ո՛չ մի կերպով կրնայ ետ ձգել բնութեան զննութիւնը, այլ ընդհակառակը կ'արծարծէ այդ զննութեան սէրը։ Բնապատմական խօսակցութեանց յաջորդող սիրուն հէքեաթ մը աւելի կենդանութիւն կու տայ նիւթին։ Հէքեաթներու էն մեծ դերը երեւակայութիւնը զարգացնելն է, երեւակայութիւնը՝ որ ստեղծագործութեան հիմն է և առանց որոյ մարդ միայն երեւոյթներու մանր խուզարկու մը կ'ըլլայ, անկարող՝ բարձրանալու գաղափարէն, ըմբռնելու կեանքն իր ընդհանուր գիծերուն մէջ։*

## ՎԵՑԷՆ ՈՒԹԸ ՏԱՐԵԿԱՆ ՏՂՈՑ ԴԱՍՏԻԱՐԱԿՈՒԹԻՒՆԸ

### ՖՐԷՕԲԷԼԻ Ե. ԵՒ Զ. ՆՈՒԷՐՆԵՐԸ

*Ե. նուէրը խոշոր խորանարդ մըն է երկայնութեամբ և լայնութեամբ երկու անգամ կտրուած և 27 խորանարդի բաժնուած։ Հատուածները երեք են։ Մէն մի հատուածին մէջ* 3×3=9 *խորանարդ կայ։ Սակայն տուփին պարունակութիւնը* 27 *կտոր չէ այլ՝* 39, *որովհետև խորանարդներէն* 3*ը՝ անկիւնագիծերով երկերկու եռանկիւն պրիսմակներու բաժնուած են և* 3*ը՝ կրկին անկիւնագիծերով չորս չորս եռանկիւն պրիսմակներու բաժնուած են։ Ուստի ամբողջին մասերն են։*

*Ամբողջ խորանարդներ* . . . . . . . . . . 21 *հատ*
*Մեծ պրիսմակներ* . . . . . . . . . . . . . . 6 »
*Փոքր* » . . . . . . . . . . . . . . 12 »

*Ամբողջութիւնը* . . . . . . . . . . . . . . . 39 *հատ*

*Այս նուէրներուն մէջ ուղիղ գծով ստուար բաժանումներուն միացած են նաև նաև շեղ կտրուածքներ որով աղայք նիւթի առատութեան մը ունենալով հանդերձ կը ծանօթանան նաև* պրիսմակ-*ներուն։ Ասով շէնքերն աւելի որոշ դուրս կ'ուգան, գեղեցկագիտական ձևերն աւելի բաղադրեալ կ'ըլլան և քառակուսիներուն ու*

եռանկեանց զուգորդութիւնը այլազան երեւոյթներ կուտան գեղեցիկ ձեւերուն։ Մաթեմաթիքական ծանօթութեանց համար Ե. նուէրը այնպիսի նիւթ մը կը մատակարարէ, որով տղաք կը ծանօթանան նաեւ երկրաչափական սկզբունքներու։

Բազմազանութիւնը խորանարդին ու եռանկիւն պրիսմակին, քառակուսին ու եռանկեան, զանազան խորանարդներու, պրիսմակներու եւ ուրիշ մարմնոց շինութիւնը, անոնց ձեւին, — ծաւալին բազմազանութիւնը — այս ամէնը կրնան զբաղեցնել նոյնիսկ 12—13 տարեկան տղաքը. մանաւանդ որ թուաբանական ծանօթութեանց համար 8 խորանարդներու տեղ աւելի հարուստ նիւթ ունինք։

Ե. նուէրը Դ.ին ընդլայնումն է։ Իսկ Զ. նուէրը Դ.ին ընդլայնումն է։

Դ.ին մէջ խորանարդը 8 աղիւսներու բաժնուած է. Զ.ին մէջ անիկայ բաժնուած է 27 աղիւսներու հետեւեալ կերպով.

21 ամբողջ աղիւս ........................ 21
3 աղիւս երկերկու քառակուսեակներու բաժնուած . 6
3 » » սիւներու » 6
Ամբողջութիւնը .................. 33 հատ

Թէեւ թուաբանական վարժութեանց համար չափազանց բարդ է Զ. նուէրը, սակայն շինութեան սքանչելի նիւթ մը ունի, որով աւելի որոշ ու գեղեցիկ երեւան կուգայ իրականը։

Մեր բոլոր զբաղումները — կեանքի, գեղեցկութեան, մաթեմաթիքական ձեւեր — աւելի ընդարձակ պիտի ըլլան 6—8 տարեկան տղոց համար։ Պարտէզի մէջ տղաք առաւօտները կ'զբաղին շինութեանց տուփերով, բայց այնպիսի կարգով, որ օր մը կազմուին իրական կեանքէ առնուած պատկերներ, օր մը գեղեցիկ ձեւեր եւ ուրիշ օր մըն ալ մաթեմաթիքական ձեւեր։

Ե. նուէրը տղոց ձեռքը տուած ատեննիս պէտք է բացատրել պարունակութիւնը — համրել խորանարդներուն կարգերը, դիրքը, պրիսմակին ու խորանարդին տարբերութիւնը։ Թէեւ Դէն յանկարծ 39 կտորներու անցնիլը քիչ մը չափազանց է, բայց օրերու ընթացքին մէջ այդ դժուարութիւնը կը հարթուի։ Առաջին անգամ բաւական է զգացնել որ տուփին մէջ 8էն աւելի խորանարդ կայ, թէ խորանարդներէն զատ եռանկիւն մարմիններ ալ կան, խորանարդներէն շեղ հատուածներէն կազմուած։

Այս նիւթերով տղայք պիտի շինեն իրենց միջավայրին ծանօթ առարկաներ և մերթ ընդ մերթ պէտք չէ մոռնալ ազդարարելու որ շէնքերը չի փլցունին այլ իրարմէ բաժնին թեթեւ փոփոխութիւններով։ Ընտանի խօսակցութիւնք դոյզ պէտք ընծայման շինութեանց։

Նախորդ 8 խորանարդներով շինեցինք սեղան, աթոռ, պահարան եւն. և շատ քիչ անգամ կրցանք երկու առարկայ միանուագ շինել։ Հիմայ շինուածանիւթը առատ է, նոյն առարկաները աւելի կատարեալ կերպով կրնանք ներկայացնել և նոյն իսկ սենեակ մը զարդարել ամբողջ կարասիներով։ Տղան կը խորհրդածէ. «Սենեկին մը ինծի, սենեկին մը մամային, պահարան մը... հոս կը դնենք ճերմակները, լոգանքը... շատ աթոռի պէտք չկայ բայց սեղան մը կ'ուզեմ խաղալիկներուս համար։»

... Սեղանատունը.— Սեղանատան համար պէտք է երկար սեղան մը և աթոռներ... լայն պահարան մըն ալ պէտք է պնակներուն համար։ Ես աթոռները կը շարեմ. հոս պիտի նստի մայրիկս հայրիկին դիմացը։» ... Պարտիզպանուհին կը հարցնէ. ինչ ամաններ կը գործածենք ճաշի ժամանակ։ Ինչպէս կը շինեն զանոնք։ Կը պատմէ։ Սակայն միայն պատմելը բաւական չէ պէտք է երբեմն ալ ցուցնել երկաթագործին, ատաղձագործին, բրուտին, գործաւորին, որպէս զի տղայք վեր ի վերոյ տեղեկութիւն մը ունենան այդ առարկաներու շինութեան վրայ։ Պատկերները երբէք լրացնելին տեղը չեն կրնար բռնել. անոնք աւելի անգամ մը տեսածը վերարտադրելու կը ծառայեն։ Վարժուհին կը շարունակէ. «Էհ, ճաշին համար պաքսիմատ պէտք է, ո՞վ պիտի առնէ»։ —Ես։ «Պաքսիմատը ինչո՞վ շինուած է։ Ո՞վ կը շինէ։ Ալիւրը ո՞վ կը պատրաստէ։ Ցորենը ո՞ւր կը բուսնի։ Ո՞վ կը ցանէ» եւն.։ Զբօսանքներու ժամանակ պէտք է ցուցնել հողմաղացը կամ ջրաղացը, ծանօթացնել դաշտի աշխատութեանց։ Հագուստ պահարանը առիթ կ'ընծայէ խօսելու ամէն տեսակ կերպասներու և անոնց պատրաստութեան եղանակին վրայ։ Այս խօսակցութեանց մէջ շատ հեռուն պէտք չէ երթալ և խօսիլ պէտք է միայն այն առարկաներուն վրայ զորս կրնանք ի հարկին ցուցնել։

—Դեռ ո՞ր սենեակը չէ շինուած։ —Գրասենեակը։ Հոս երեւան կուգայ բազկաթոռը, աթոռը, գրադարանը, գրասեղանը։ Այս

*դրասեղանը սեղանատան մէջ գործածուածին չի նմանիր. անոր վրայ կը անենուին թանաքաման, թուղթ, գրիչ, մատիտ, գրավէմ եւն.: Ո՞ւր կը չինուին անոնք: Հիմայ որ բոլոր սենեակներուն պատրաստութիւնը տ'եսանք, պարտը բարձրացնենք եւ պատուհաններուն անդը բաց թողունք: Պատուհանները ի՞նչ բանի կը ծառայեն: Շրջանակները ո՞վ կը չինէ: Շրջանակներուն մէջ ի՞նչ կը դրուի: Ապակիին տեղ կարելի՞ է ուրիշ առարկայ մը դնել: Ո՞վ կ'անցնէ ապակին: Ապակեգործը ինչպէս կ'անցնէ ապակին: Վար իջնանք բակը բայց սանդուխ մը պէտք է: Բակին մէջ ի՞նչ կայ: Փայտանոցը: Փայտը ուսկի՞ց կը բերեն: Հապա ածո՞ւխը: Ի՞նչպէս կը չինեն:*

*Եթէ պարտիզպանուհին իր պաշտօնին ձեռնհաս անձ մըն, է այս խօսակցութիւնները կը շարունակուին հետաքրքրութեամբ մինչ մէկ կողմէն զանազան շէնքեր կը բարձրանան յաջորդաբար:*

*Ինչ որ ըսուեցաւ Ե, նուէրին համար նոյնը կարելի է գործադրել նաեւ Զ.ին մէջ: Զ. Նուէրի շէնքերը աւելի նուրբ ու իրականին մօտ ըլլալով մեծ հաճոյք կը պատճառեն տղոց:*

*Գնդեցիկ ձեւերու մէջ պիտի մտնեն բոլոր խորանարդները: 8 խորանարդներէն յետոյ այս սուստ նիւթով շինուած գնդեցիկ ձեւերը բաւական յօգնութիւն կը պատճառեն. ուստի շատ պարզ ձեւ մը հիմ բռնելով հետզհետէ բարդելու է համաչափութիւնը պահելով:*

*Ե. եւ Զ. նուէրներով կատարուած վարժութեանց մէջ կարելի է ամփոփել ամբողջ երկրաչափութիւնը: Հոս կարելի է բաղդատել ձեւերը, բաղդատել մարմինները՝ նոյնաձեւ բայց այլածաւալ, նոյնածաւալ բայց այլաձեւ եւն.: Այս վարժութիւններուն կրնան օգտակար ըլլալ չափաւորութեան սահմանին մէջ: Մաթեմաթիքական վարժութիւնները պիտի շարունակուին աւելի մեծ թիւերով:*

*(Տախտակ Է. Ը. Թ. կեանքի ձեւեր, Ժ. եւ ԺԱ. Գեղեցիկ ձեւեր:)*

## Է. ՆՈՒԷՐ — ՄՈՂՋԱՑԻԿ

(Տախտակ ԺԲ.)

*Նախորդ վեց նուէրներուն մէջ տղաք ծանօթացան զանազան մարմիններու. ա՛լ ժամանակն է ծաւալներէն մակերեւոյթներուն*

անցնելու։ Մակերեւոյթներու ծանօթութեան համար Ֆրէօպէլ կու-տայ իր Է. նուէրը = խաւաքարտով կամ տախտակով պատրաս-տուած գունաւոր մակերեւոյթներ։ Այս մակերեւոյթներուն գլխա-ւոր ձեւերը հետեւեալներն են։

1.— Քառակուսի

2.— Ուղղանկիւն հաւասարակող եռանկիւն

3.— » անհաւասարակող »

4.— Հաւասարակողմ եռանկիւն

5.— Բթանկիւն եռանկիւն

6.— Սուրանկիւն »

Ինչպէս ըսինք Է. նուէրը փայտէ կամ թղթէ կ'ըլլայ ծիածանի 7 գոյներով։ Գաւառացի պարտիզպանուհիք Է. նուէրը իրենք ալ կրնան պատրաստել, փայլուն գունաւոր խաւաքարտով։

Քառակուսի մակերեւոյթին գաղափարը տղոց մէջ լաւ տպաւորելու համար կ'առնենք 15—20 մօզայիք (քառակուսի) և իրարու վրայ դնելով կը կազմենք խորանարդ մը զոր յետոյ կը ցրուենք։ Տղան այս գործողութեամբ կ'ըմբռնէ որ խորանարդը կարելի է վերածել բազմաթիւ մակերեւոյթներու և թէ այդ մակերեւոյթները իրարու վրայ շարուելով կրնան վերստին կազմել խորանարդը։ Մօզայիքի տարբեր ձեւերը յաջորդաբար կը տրուի տղոց, որոնք նիւթին ծանօթանալէն յետոյ կը կազմեն գեղեցիկ ձեւեր ու կեանքի պատկերներ։ Քառակուսիներով ու եռանկեանց տեսակներով շինուած այս պատկերները շատ կարեւոր են, վասն զի տղուն միտքը թանձրացեալէն կը բարձրացնեն վերացեալին։ Առաջ տղան առարկաներուն ձեւերը կը յօրինէր ծաւալներով, հիմայ այդ պատկերները մակարդակի մը վրայ կը տեսնուին։ Տղուն կատարածը նկարչութեան պէս բան մըն է։ Մօզայիքի զբաղմանց ժամանակ կարեւորը համաչափութիւնն է։ Ասոր համար կարելի է գեղեցիկ ձեւի մը կէսը կազմել և թողուլ որ մնացեալ կէսն ալ ինքը կազմէ։ Մօզայիքի վարժութեանց մէջ տղան կը սորվի նաև դասաւորել գոյները, որ ճաշակը ազնուացնող գործ մըն է։

Մօզայիքի դասերուն խօսակցութիւնները կը շարունակուին ըստ առաջնոյն։



# ՆԵՐԿՈՎ ԳԾԱԳՐՈՒԹԻՒՆ

*Տղայոց գոյներու ծանօթութիւնը, մինչեւ 5 տարեկան, ծիածանի 7 գոյներէն անդին չանցնիր։ Սակայն կուգայ ժամանակ մը, երբ կարգ մը զբաղումներ — մոզայիք, հիւսուածք, կար եւն.,— գոյներու դասաւորութեան մէջ ճաշակ կը պահանջեն։ Ընդհանրապէս պարտէզներու մէջ վարժուհիք առարկայի մը կամ կենդանւոյ մը պատկերը կրող խաւաքարտը ծակոտել կուտան։ Տղուն կը պատուիրեն — «Այս ըրդով անցիր ծակերուն վրայէն, երբ բուրդդ վերջանայ քովս եկուր որ ուրիշ գործ մը տամ»։ Շատ անգամ տեսած եմ տղոց տետրակներուն մէջ չափազանց բարդ ու գեղեցիկ նկարներ զարմանալի ճշտութեամբ ու ճաշակով կարուած, մինչդեռ անոնք այդ աշխատութեանց տէրը չեն։ Գոյներու ծանօթութիւնը աւելի հիմնաւոր պարտի ըլլալ։ Գոյներու ճաշակաւոր դասաւորութեան պարզագոյն միջոցը հետեւեալն է։*




*Կ'առնենք երեք գոյն ներկ —* կարմիր, կապոյտ, դեղին։ *Տղան առանձին ամաններու մէջ կը մարէ այդ գոյները։ Ապա թերթ մը մաքուր թղթի վրայ եռանկիւն ձեւով կը շինէ երեք շրջանակներ։ Եռանկեան ու շրջաններուն մէջ տեղերը չորս հատ քառակուսիներ կը շինէ։*

*Ա. շրջանը կը ներկէ դեղին, Բ.ը՝ կապոյտ և Գ.ը՝ կարմիր։ Այնուհետեւ տղան պնակի մը մէջ իրար կը խառնէ դեղինն ու կապոյտը և կ'ստանայ* կանանչը։ *Այս գոյնով կը ներկէ Է. քառակուսին։ Դարձեալ կապոյտը կարմիրին հետ կը խառնէ և կ'ունենայ* մանիշակագոյնը, *որով կը ներկէ Ե. քառակուսին։ Վերջապէս կարմիրը դեղինին հետ խառնելով կ'ստանայ* նարնջագոյնը, *որով*

կը ներկէ Դ. քառակուսին։ Բոլոր գոյներու խառնուրդովը՝ սեւով կը ներկէ Զ. քառակուսին։ Այս գործողութենէն յետոյ տղան շատ լաւ կ'որոշէ գոյներուն հիմնականն ու բաղադրեալը։ Այնուհետեւ պարզ ու փորձնական կերպով տղոց կրնանք հասկցնել որ բաղադրեալ գոյները կը կազմուին ո՛չ միայն հիմնական գոյներուն խառնուրդովը, այլ նոյն իսկ եթէ երկու հիմնական գոյն միանուագ ազդեն մեր աչքին վրայ, բաղադրեալ գոյնին տպաւորութիւնը կ'ստանանք։ Ասիկայ ապացուցանելու համար խաւաքարտէ շրջանակի մը երկու կէսերը կը ներկէք հիմնական երկու գոյներով ու արագ կը դարձնէք տղաք երկու գոյնի տեղ բաղադրեալ. գոյն մը կը տեսնեն։ Միեւնոյն ժամանակ կրնանք զգացնել տղոց որ բաղադրեալ գոյն մը զինքը բաղադրող հիմնական գոյներուն հետ լաւ չերթար, օրինակի համար կանանչը չի վայլեր ո՛չ դեղինին և ոչ կապոյտին քով որոնցմէ ինքը բաղադրուած է։ Նկարի մէջ իրարու կը յարմարին կարմիրն ու կանանչը, նարնջագոյնն ու կապոյտը, դեղինն ու մանիշակագոյնը։

Առարկաներու գունաւոր գծագրութիւնը, գոյներու ճաշակաւոր դասաւորումի գիտակցութիւնը կուտայ տղոց։ Պարտէզի տղայք ջրաներկով կրնան աշխատիլ իրենց տետրակներուն մէջ, միայն թէ տրուած օրինակները շատ պարզ պիտի ըլլան։ Գունաւոր նկարի նախափորձերը շատ պարզ են. նախ քառակուսիներ, եռանկիւններ, ու շրջաններ ներկել կուտանք, ապա՝ մոզայիքով կազմուած գեղեցիկ ձեւերը և վերջապէս պարզ առարկաներու պատկերներ։

## Ը. ՆՈՒԷՐ — ԾԱԼՔԻ ԹՈՒՂԹ

(Տես տախտակ ԺԴ եւ ԺԴ)

Մոզայիքներուն մէկ ճիւղն և կերպընկալ տեսակն է ծալքի թուղթը։ Ասով տղաք աւելի բազմակողմանի ձեւերով կը ներկայացնեն միջավայրի առարկաները։ Ծալքը շատ գրաւիչ աշխատանք մըն է, նոյն իսկ ամենափոքր տղոց համար։ Ծալքը մեծ ճաշակ, ճշտապահութիւն և մատներու ճկունութիւն կը պահանջէ, և որովհետեւ ուշադրութիւնը չափազանց կը լարէ, աշխատանքը երկար չի պիտի տեւէ։ Ծալքի աշխատութեան ժամանակ երկրաչափական

գիտելիքներու կը վարժուին, կը սորվին քառակուսին, եռանկիւնը, եռանկեան տեսակները, շրջագիծ, անկիւններ, անկիւնագիծ, կեդրոն եւն, նոյն իսկ կը լուծեն կարգ մը երկրաչափական խնդիրներ։

Ծալքի թուղթը երկու երեսը գունաւոր, 1 dcm. տարածութեամբ քառակուսի մըն է։ Պարտիզպանուհին աշխատութեան նիւթը լաւ մը ծանօթացնելէն յետոյ (ձեւ, գոյն, կող, անկիւններ. անոնց անունները, երեսներ եւն.) իւրաքանչիւր տղու մէյմէկ հատ կուտայ։

— Տղաք, եկէք միացնենք մեր թուղթերուն վարի աջ ու ձախ անկիւնները վերիններուն։ Այս ձեւը քառակուսիի կը նմանի՞։ — Ո՛չ։ — Ի՞նչ տարբերութիւններ ու նմանութիւններ կան երկուքին մէջ։

— Երկուքն ալ չորս կողմ ու չորս անկիւն ունին բայց քառակուսիին կողերը իրարու հաւասար են, fառաCկիւCիC կողերը իրարու հաւասար չ'են։ — Քանի՞ քառանկիւն գրուած է իրարու վրայ։ — Երկու։ Ի՞նչ բանի կը նմանի։ — Հայրիկին թղթապանակին։ — Թղթապանակը ի՞նչ բանի կը ծառայէ։ Հիմայ, տղաք, քառանկիւնաձեւ կողերը իրարու վրայ դրէք ու ծալլեցէք. ի՞նչ ձեւ առաւ։ — Քառակուսի։ Քանի՞ քառակուսի իրարու վրայ դրուած է։ Ի՞նչի՞ կը նմանի։ — Հայրիկին թաշկինակին։ Թաշկինակը ի՞նչ բանի կը ծառայէ։ Ի՞նչէ՞ շինուած է։ Բացէք հիմայ այդ թաշկինակները տեսէք վրան ի՞նչ շինուած է։ — Խաչ մը։ Քանի՞ գիծով։ — Երկու։ Երկու գծերուն իրար կտրած տեղը կեդրոն կ'ըսուի։ Այդ գծերը ո՞ւսկից ուր կ'երթան։ — Մէկը վերի կողին մէջ տեղէն վարի կողին միջավայրը եւ միւսը աջ կողին մէջ տեղէն ձախ կողին միջավայրը։ Տղաք, վերի աջ անկիւնը վարի ձախ անկեան վրայ դրէք ու ծալլեցէք։ Այս ի՞նչ ձեւ է։ — Եռանկիւն։ Ի՞նչի՞ կը նմանի։ Ծաղարարին շինած խմորեղէնին։ Եռանկիւնը քանի՞ անկիւն ու կող ունի։ Բացէք եռանկիւնը եւ տեսէք ի՞նչ աւելցեր է։ — Նոր գիծ մը որ վերի աջ անկիւնէն վարի ձախ անկիւնը կերթայ։ Ատոր անկիւնագիծ կ'ըսեն։

Քառակուսի թղթին ծալքերը իրարու վրայ բարդելով տղաք զարմանալի ճշտութեամբ կը շինեն աղաման, չայլիկ, գլխարկ, կաթսայ, երկու կանթով կաթսայ, սակառ, ձի, բադ, հայադարձին ձին իր զոյգ կողովներով եւն. (Տախտակ ԺԳ եւ ԺԴ.)։ Պարտիզպանուհիք գեղեցիկ ձեւերու բազմաթիւ օրինակներ կրնան հնարել։ Գալով կեանքի ձեւերուն, անոնք չատ տարածուած են մանր-

...ւէն հակառակը 3 վրայէն 3 տակէն
1 » 3 »
2 » 3 »

...ւկէն 2 վրայէն 2 տակէն
2 » 1
... » 3 և հակառակը ։

... պահուին տեսարաններու մէջ
... կը զարդարուին ։ Այսպէս
...ով կը շինուին, անձե-
...ձեր եւայլն ։ Լաւա-
... մէջ կը կախուին ։

...ւ կը գ...
...արամադրութեան թղթով ։

1. Հակուղիղէն զուգահեռական գիծ մը ։
2. Փոքր էջին » » » ...ւնի
3. Մեծ » » » 4
4. Երկու էջերուն զուգահեռական գծեր, վերի մասը միացած,
5. Մեծ էջին ու հակուղեղին զուգահեռական գիծեր
6. Փոքր » » » » »
7. Հակուղիղեն և մեծ էջին վերի քառորդները միացնել փոքր էջին միջավայրին հետ ։ եւլն ։

Այս և ասոնց նման ձեւերէն զատ աղայք կրնան խաւաքարտի վրայ սիրուն ձեւեր կտրատել (տես Տախտակ ԺԶ և ԺԲ.) ։ Ասոր համար վարժուհին կանխաւ կը գծէ գունաւոր խաւաքարտերու վրայ զանազան առարկաներու չրջագիծերը, զորս աղայք կը կտրեն և առացուած պատկերը կը փակցնեն ձեռագործի տետրին մէջ ։

## Ժ. ՆՈՒԷՐ — ՀԻՒՍՈՒԱԾՔ

( Տախտակ ԺԸ. ԺԹ. Ի. ԻԱ )

Թղթի հիւսուածքը կամ ոստայնանկութիւնը փոքր տղոց ամենէն աւելի սիրած զբաղումն է ։ Այս գործը, որ համաչափութեան ճաշակը, թիւի և գոյնի ծանօթութիւնը կուտայ կարելի է սկսիլ

տղոց մէջ, որոնք, դասագրքի մէջ բացատրութիւնը անհնար եղող դարձուածքներով ու ծալքերով, յառաջ կը բերեն ամէն տեսակ առարկաներ մատներու զարմանալի ճարտարութեամբ։

## Թ. ՆՈՒԷՐ — ԿՏՐԵԼ ՈՒ ՓԱԿՑՆԵԼ

( Տես տախտակ Ժէ )

Ամէն տղայ ի բնէ մկրատով թուղթ կտրելու փափաք մը ունի։ Փոխանակ արգիլելու այդ գործիքին գործածութիւնը որ կրնայ երբեմն վտանգաւոր ըլլալ, աւելի աղէկ կ'ըլլայ գործածութեան կերպը սորվեցնել, որպէս զի տղոց մատները զօրանան, աչքը ճշդութեան վարժուի և երեւակայութիւնը հարստանայ։

Երեքէն չորս տարեկան տղոց թուղթ կտրելու աշխատութիւնը ձեռքով կ'ըլլայ քանի որ դեռ մկրատ չ'են կրնար բռնել. անոնք թուղթը երկու կամ չորս անգամ եռանկիւն ծալլելէն յետոյ եղնգով կը կտրատեն ու ծակեր կը բանան։

5-6 տարեկան տղոց մկրատ գործածելու ժամանակը հասած է, միայն թէ գործիքին ծայրը կլոր պիտի ըլլայ, որպէսզի վտանգ մը չի պատահի։

Կտրելու թղթին մէկ կողմը փայլուն գունաւոր է, և միւս կողմը ճերմակ. երկու կողմէ գունաւորներ ալ կան. տարածութիւնը 1 d$^{em}$ է։

Այս զբաղման համար պէտք է ունենալ գունաւոր քառակուսի թղթեր, կլոր ծայրով մկրատներ, արաբական խէժ, վրձիններ և մոխրագոյն կամ կապոյտ սաւարաթղթէ շինուած տետրակներ, որոց մէջ պիտի փակցուին կտրատուած ձեւերը իրենց ամենամանր կտորներով։ Աշխատութեան համար նախ պէտք է պատրաստել քառածալ կամ ութածալ ուղղանկիւն եռանկիւն մը։ Պարտիզպանուհին կը սորվեցնէ ուղղանկիւն եռանկեան մասերը—ուղիղ անկիւն մը, երկու սուր անկիւններ, մէկ հակուղիղ և երկու էջեր։ Աշակերտները ծալլուած ուղղանկեան այնպիսի դիրք մը պիտի տան սեղանին վրայ, որ մեծ էջը ուղղաձիգ և փոքրը հորիզոնական ըլլայ, իսկ հակուղիղը ձախ կողմը իյնայ։ Հրամանները շատ որոշ ու գործադրելի պիտի ըլլան փոքր տղայոց համար։ Իւրաքանչիւր տղայ վար-

*ժուհիին առաջարկած գիծը մատիտով կը քաշէ սեւանկեան վրայ, զոր պիտի կտրէ մկրատով: Օրինակի համար. հակուղիղին զուգահեռական գիծ մը քաշեցէք, կ՚ըսէ վարժուհին: Կտրեցէք սեւանկիւնը այդ գիծին ուղղութեամբ: Բացէք: Տղայք խաչ մը կը տեսնեն իր կտորներով, զորս կը փակցնեն ճաշակով իրենց ձեւագործի տետրին մէջ: Կտրուածքի դասին մէջ ամէն նոր ձեւ խօսակցութեան առիթ պիտի ըլլայ: Մենք այստեղ կը դնենք քանի մը օրինակներ, մնացածը դաստիարակին հնարամտութեան թողլով:*



1. *Հակուղիղէն զուգահեռական գիծ մը:*
2. *Փոքր էջին » » »*
3. *Մեծ » » »*
4. *Երկու էջերուն զուգահեռական գծեր, վերի մասը միացած:*
5. *Մեծ էջին ու հակուղեղին զուգահեռական գիծեր*
6. *Փոքր » » » » »*
7. *Հակուղիղեն և մեծ էջին վերի քառորդները միացնել փոքր էջին միջավայրին հետ: Եւլն:*

*Այս և ասոնց նման ձեւերէն զատ տղայք կրնան խաւաքարտի վրայ սիրուն ձեւեր կտրատել (տես Տախտակ ԺԶ և ԺԲ.): Ասոր համար վարժուհին կանխաւ կը գծէ գունաւոր խաւաքարտերու վրայ զանազան առարկաներու չրջագիծերը, զորս տղայք կը կտրեն և ստացուած պատկերը կը փակցնեն ձեւագործի տետրին մէջ:*

## Ժ. ՆՈՒԷՐ — ՀԻՒՍՈՒԱԾՔ

(Տախտակ ԺԸ. ԺԹ. Ի. ԻԱ.)

*Թղթի հիւսուածքը կամ ոստայնանկութիւնը փոքր տղոց ամենէն աւելի սիրած զբաղումն է: Այս գործը, որ համաչափութեան ճաշակը, թիւի և գոյնի ծանօթութիւնը կուտայ կարելի է սկսիլ*

նոյն խակ 4 տարեկանէն, 6—7 տարեկան տղոց տրուած օրինակները աւելի բարդ են։

Հիւսուածքի նախնական նիւթերն են—առէջը, թելանը և փայտէ կամ պողպատէ ասեղը։ Ա. Առէջը գունաւոր, քառակուսի կամ քառանկիւն թուղթ մըն է որ եզերքներէն մէկ սանթիմէթր ներսէն քանդուած է 3mm—5mm շերտերու։ Երբեմն շերտերը աւելի լայն կ'ըլլան։ Մանր տղոց գործածած առէջները 1 dem տարածութիւն ունին։ Աւելի մեծ ու զանազան ձեւերով առէջներ կը ծախուին 6—8 տարեկան տղոց համար։

Բ. Թեզանը թղթէ շերտերու շարք մըն է, որոնք մէկ կողմէն միայն իրարու միացած են։ Թեզանի տարածութիւնն ու շերտերուն լայնութիւնը առէջին համապատասխան կ'ըլլայ։

Գ. Ասեղ.— Յիշուած նիւթերէն զատ հիւսելի համար պէտք է ունենալ փայտէ կամ պողպատէ ասեղ մը, նուրբ հիւսուածքներու համար պողպատէ ասեղը յարմարագոյնն է։

Աշխատութեան ժամանակ տղան թեզանէն շերտ մը կը փրցնէ ու կանցնէ ասեղին ծայրը. ասեղը աջ ձեռքով կը բռնէ սուր ծայրը դուրս և թուղթը բռնող ծայրը ափին մէջ։ Ձախ ձեռքին մէջ բռնուած է առէջը, որուն շերտերուն մէջէն կ'անցնէ ասեղը փոխն ի փոխ տակէն, վրայէն, մինչև որ ծայրը հասնի։ Վերջապէս ասեղը կազատէ և առէջին մէջ հիւսուած թելանը դէպ ի եզրը կը հրէ։ Երկրորդ անգամ նոյն գործողութիւնը կը կրկնէ հակառակ ընթացքով և այսպէս շարունակ՝ մինչև որ առէջը լեցուի։ Մանր տղոց պզտիկ առէջներ պէտք է տալ. հակառակ պարագային ձանձրոյթը կը տիրէ. գործի մը շուտ լմննալը էն պզտիկին հրճուանք կ'ազդէ։

Հոս կը դնենք հիւսուածքի ցուցակ մը դաստիարակներուն դիւրութեան համար։ Ցուցակին մէջ տեսնուած վարժութիւնները իրարմէ կը բղխին, որովհետև հիւսուածքի մը հակառակ երեսի պատկերը կրնայ նոր հիւսուածքի մը օրինակ ըլլալ։

Այս զբաղումին մէջ ալ պարտիզպանուհիք մոռնալու չ'են որ զուարթ և օգտակար խօսակցութիւն մը անհրաժեշտ է։

## ՑՈՒՑԱԿ.

| | | |
|---|---|---|
| 1 վրայէն 1 տակէն | հակառակը | 1 վրայէն 1 տակէն |
| 2 » 2 » | | 2 » 2 » |
| 2 » 1 » | | 1 » 2 » |

| | | | | | | | | |
|---|---|---|---|---|---|---|---|---|
| 3 | վրայէն | 3 | տակէն | հակառակը | 3 | վրայէն | 3 | տակէն |
| 3 | » | 1 | » | | 1 | » | 3 | » |
| 3 | » | 2 | » | | 2 | » | 3 | » |

| | | | | | | | |
|---|---|---|---|---|---|---|---|
| 1 | վրայէն | 1 | տակէն | 2 | վրայէն | 2 | տակէն |
| 1 | » | 1 | » | 2 | » | 1 | |
| 1 | » | 1 | » | 3 | » | 3 | և հակառակը։ |

վերջացած աշխատութիւնները կամ կը պահուին տետրակներու մէջ և կամ անոնցմով զանազան առարկաներ կը զարդարուին։ Այսպէս խաւաքարտի վրայ փակցուած հիւսուածքներով կը շինուին, անձեռոցի կապեր, լամբարակալներ, ձեռնոցի տուփեր եւայլն։ Լաւագոյն օրինակները քաջալերութեան համար սրահին մէջ կը կախուին։

## ՈՒԼՈՒՆՔ ԵՒ ՑՈՂՆԱՇԱՐ

Պարտէզի տղոց սիրելի գործերն են նաև ուլունքի և ցողունի շարանները։ Մանր տուփերու մէջ պարտիզպանուհին կը բաժնէ 3—4 գոյն ուլունքներ, որոնք շատ խոշոր չի պիտի ըլլան։

Տղայք բութ ասեղով մը դերձանի վրայ շարաններ կը կազմեն թիւի և գոյնի նմանութիւնները պահելով։ Այս գործին մէջ գոյնի և թիւի ծանօթութիւնը կը հաստատուի։

Ցողնաշարը ցորենի ցողուններով ու խաւաքարտի կտորներով կ'ըլլայ դերձանի վրայ։ Եթէ ցօղունները և խաւաքարտի կտորները գունաւոր ըլլան աւելի աղէկ կ'ըլլայ։



Շարանի համար ցողունները կանխաւ կը թրջեն ու կը մկրատեն երկու սանթիմէթր երկայնութեամբ. Նմանապէս կը պատրաստեն հաստ թղթի կտորներ կլոր կամ քառակուսի մէջտեղերը ծակուած։ Այս նիւթերը ասեղ դերձանի մը հետ տուփի մը մէջ կը դրուին, զբաղման ժամանակ ամէն մի աշակերտ իր առանձին տուփն ունի։

## ԺԱ. ՆՈՒԷՐ — ԳԱՒԱԶԱՆԻԿ

( Տախտակ ԻԴ. )

Ֆրէօպէլի գաւազանիկները բազմակողմանի զբաղմանց նիւթ կը մատակարարեն և տրամաբանական հետեւութիւնն են նախորդ խաղալիկներուն։ Ինչպէս տեսանք նախ զբաղման նիւթ եղան ծաւալները, ապա մակերեւոյթները, վերջապէս հասած է ժամանակը անցնելու գիծերուն—գաւազանիկներուն։ Գաւազանիկները պատրաստ գիծեր են տղոց համար, միջավայրի առարկաները գծելու համար։ Գաւազաններով կ'ուսանին նաև թուաբանական գիտելիքներ ինչպէս միաւորները, տասնաւորները (տասնոց խուրձեր) ևայլն։ Գաւազանիկներու երկայնութիւնը 5—20 սանթիմէթր կ'ըլլայ։ Զբաղման ժամուն պէտք է բաժնել 2—3 տեսակ երկայնութիւններ որպէս զի առարկաներու գծային պատկերը որոշ ու գեղեցիկ ըլլայ։

Իւրաքանչիւր դասի զբաղման նիւթ կ'ըլլան.

Ա. Կեանքի պատկերներ.

Բ. Երկրաչափական ու գեղեցկագիտական ձեւեր.

Գ. Թուաբանական վարժութիւններ։

Գաւազանիկները 5 տարեկանէն առաջ տալու չ'է տղոց ձեռքը։

Գաւազանիկի զբաղմանց համար մենք անյարմար կը գտնենք առաջին օրէն դրատախտա՛կի վրայ գծուած պատկերները։ Տղաք պէտք է նախ ուշադրութեամբ դիտեն իրենց շուրջը գտնուած առարկաները, գտնեն անոնց ընդհանուր գիծերը և որքան հնար է գծեն զանոնք գաւազանիկներով։ Պարտիզպանուհւոյն օգնութիւնը կարեւոր է այս պարագային՝ չափաւոր սահմանի մը մէջ, որպէս զի տղոց անձնազատ գործունէութիւնը չի խամրի։ Պէտք է լաւ գիտնալ որ, տղայոց դիտելու կարողութիւնը, մտածողութիւնը և ստեղծող ուժը զօրացնելն է մեր միակ նպատա՛կը։ Տղայք երբ բաւական վարժուին ծանօթ առարկաները գծելու, կարելի է տալ պատկերներ որպէս զի երեւակայութիւննին զօրանայ։

Գաւազաններու համար 20—25 վայրկեան զբաղումը կը բաւէ,

Պարտիզպանուհին կ'ըսէ «Տղաք, նայեցէք հոս ծաղկաման մը ունիմ, կրնա՞ք ձեր գաւազաններով անոր պատկերը շինել»։ — Նայինք..., յատակը անկիւնաւոր պիտի ըլլայ։— Բայց ի՞նչ մեծաս բա-

ւական է որ ծաղկամանին նմանի։ Ահա ես ծաղկին տեղ ճիւղ մը դրի դնեմ ու մանրուանք, տերեւները գաւազանիկով չ'են չինուիր. ծաղկամանը չինուեցաւ։ Մտածեցէք տեսնեմ պզտիկ փոփոխութեամբ մը ուրիշ [illegible] մը կը չինուի՞։

Ծաղկամանին յատակը և կողերը կը հանեմ, ճիւղերն ալ վար կը դարձնեմ կուռնեռնամ կաղանդին ծառը։ Տօնածառն է սափկայ, որուն վրայ կաղանդին ամեն տեսակ խաղալիկ ու մրգեր կը կախենք։ Եթէ պատուանդանը վերցնեմ ծառը կը մնայ միայն ինչպէս անտառին մէջն էր, արմատը չի տեսնուիր որովհետև հողին տակն է Միայն ոստերն ու բունը կը տեսնուին։

Երբ տղայք իրենց ծանօթ առարկաները կը ձեւացնեն, առարկաներ՝ որոց պատկերն առաջ խորանարդներով կը չինէին կամ աղիւսներով, կըդմայլին ո'չ միայն իրենց ճարտարութեան վրայ, այլ նաև անոր համար որ այս նուէրով պատկերներն աւելի նուրբ գծերով երեւան կուգան մակարդակին վրայ։

— Ինչո՞ւ համար, աթոռը, սեղանը... ու այն ամեն բաները, որոնք խորանարդներով կը չինէինք առանցմէ տարբեր տեսք ունէին։ Կրնա՞ք ըսել ի՞նչ տարբերութիւն կայ գաւազանիկին ու խորանարդին մէջ։ Ի՞նչ բաներ կը չինուին գաւազանիկով, որոնք անկարելի է չինել խորանարդներով։— Բահը, բրիչը, ուրագը, գաւաթը... թէև ո'չ բոլորովին ճիշտ բայց գոնէ կրնանք ձեւացնել գաւազանիկներով, մինչդեռ ատոնք խորանարդներով չեն չինուիր։

Շինեցէք տեսնեմ գաւաթ մը, սկահակ մը. ցուցուցէք ո՞ւր է սկահակին ոտքը, ուր կը լեցնեն գինին։ — Տես, օրիորդ, կըսէ մէկը, ես սափկայ վրան դրի (գաւազանիկ մը) կափարիչ եղաւ... հիմայ ամառ է, գինին լեցնելուս պէս ճանճերը մէջը կը թափին անոր համար խուփ մը դրի։

Տղան չատ լաւ կը հասկնայ որ գաւազանիկով չինուած սկահակին մէջ գինի չի դրուիր, սակայն ամէն բանի մէջ իրականը երեւակայել վարժուած է։ Պարտիզպանուհին պիտի հասկցնէ որ մենք գաւազանիկներով առարկային միայն գլխաւոր գիծերը, եզերքները, ուրուագիծը կը ներկայացնենք, իսկ խորանարդներով՝ մակերեւոյթները։ Գաւազանիկներով չինուած ձեւերը կրնան նկարուիլ տետրակներու մէջ մատիտով։

## ԺԲ. ՆՈՒԷՐ — ՕՂԱԿՆԵՐ

(Տախտակ ԻԳ.)

*Արդէն ըսուեցաւ թէ* Ֆրէօպէլի *մէթոտը բնական աստիճանաւորումով մը կը յառաջանայ և տղոց հոգեկան կարողութեանց յաջորդական զարգացումին համեմատ կը հասցնէ խաղն ու խաղալիկը։*

*Պատրաստ գիծերով պատկերներ ու կազմութեան մէջ կոր գիծերու պէտքը զգալի կըլլայ։ Տղոց այդ պահանջին գոհացում տալու համար է որ* Ֆրէօպէլ *կուտայ իր ԺԲ. նուէրը։*

*Ընդհանրապէս գործածուած օղակները երեք աստիճան մեծութիւն կունենան և երեք տեսակ կ'ըլլան — ամբողջ, կէս և քառորդ. շատ անգամ ութերորդներ ալ կը գործածուին։ Բնականաբար այս ամէնը միանուագ չ'են տրուիր տղոց։ Ամէնէն փոքրներուն կը տրուին ամբողջներ (մեծ) և կէսեր, ու այնուհետև աստիճանաբար հասակի և կարողութեան համեմատ կը տրուին միւս մասերը։*

*Օղակներով կը շինուին հարթ պատկերներ կոր գծերու հաճելի զուգորդութեամբ մը. անոնք կը ծառայեն նաև ամբողջին ու իր մասերուն ծանօթութեան։ Երեք մեծութեան օղակները ու անոնց մասերը ունենալով կարելի է շատ գեղեցիկ պատկերներ կազմել։ Այս զբաղմանց մէջ կը բացատրուին օղակին ձևը, նիւթը, անոր նման առարկաները — մատանի, տակառ, շրջանակ, անիւ, պնակներուն եզերքը, շերեփին շրջագիծը...— ու այդ առարկաներուն վրայ տեղի կունենան հաճելի խօսակցութիւններ։*

*Օղակներով կը շինուին կեանքի ձևեր, գեղեցիկ ձևեր ու կը կատարուին թուաբանական վարժութիւններ։*

## ՖՐԷՕՊԷԼԻ ԺԳ. ՆՈՒԷՐԸ — ՍԻՍԵՌԻ ԳՈՐԾ

(Տես տախտակ ԻԵ եւ ԻԶ)

*Ահա զբաղում մը որ մեծ ծախքի կարօտ չ'է։ Ափ մը սիսեռ և կայլ մը գաւազանիկ կը բաւեն գեղեցիկ ձևեր և առարկաներու*

պատկերներ պատրաստելու։ Հոս գծային ծաւալներ կը տեսնուին նիւթէն մերկացած։ Սիսեռի գործը միայն այն ժամանակ կը սկսի երբ տղայք լաւ ծանօթացած են ծաւալներուն ու գծերուն։ Գաւազանիկներով շինուած ձեւերը քանի մը վայրկեան միայն հաճոյք կը պատճառեն տղոց, մինչդեռ սիսեռի գործերը տեւական են ու տղայք կրնան զանոնք միշտ աչքի առաջ ունենալ դասարանին սրահին պատերէն կախուած։ Սիսեռով կը շինուին նախ ուղիղ գիծերով առարկաներ, սակայն կուգայ ժամանակ մը, երբ կրնանք տալ նաեւ կոր գիծեր (օղակ)։ Յաճախ պատրաստուած առարկաները կը հիւսուին գունաւոր թղթի երիզներով։ Սիսեռի տեղ կարելի է գործածել նաեւ սունկի մանր խորանարդներ։

Զբաղումը սկսելէն առաջ նիւթին ծանօթութիւնը կարեւոր է։

Դասէն 3-4 ժամ առաջ սիսեռը կը թրջեն պաղ ջուրով եւ ջուրէն հանելով լաթի մը վրայ կը սփռեն որ ջուրը քաշէ, հակառակ պարագային մաշկը չի տոկար մէջը մնացած գաւազանիկներուն ու կը պատռի։

Սիսեռին համար գործածուելիք գաւազանիկներուն երկու ծայրերը սուր պիտի ըլլան։ Այս աշխատութիւնը կարելի է տղոց յանձնել որպէսզի դանակի գործածութեան վարժուելով հանդերձ, շինուածութեան մէկ մասն ալ իրենք պատրաստած ըլլան։

## ԺԴ. ՆՈՒԷՐ — ԿԱՒԱՐ

(Տես տախտակ Իէ. ԻԸ.)

Կաւարները 1 սանթիմէթր լայն, 20 սանթիմէթր երկայն գունաւոր ճկուն փայտեր են, որոցմով կը հիւսուին գեղեցիկ ձեւեր։ Թէեւ պարզ փայտէ ճերմակ կաւարներ կան, սակայն նախորդ ծանօթութիւնները նորոգելու համար լաւագոյն է գունաւորներ գործածել։ Գաւառներու մէջ այս նիւթը շատ անգամ կը պատրաստուի պատէ չերտերով։

Կաւարի զբաղումը շրջահայեցութիւն, համբերութիւն եւ մատներու ճարպկութիւն կը պահանջէ, ուստի 5-6 տարեկան տղայոց կը յարմարի։ Գաւազանիկներով շինուած պատկերները տղան չ'էր կրնար վերցնել կամ տեղափոխել, մինչդեռ կաւարով շինուածները բաւական հաստատուն են ու կրնան նոյն լաւ պահուիլ՝ պատէն կախուած։

Հոս ալ նոյն կարգը պիտի պահուի, այսինքն նախ պիտի շինուին կեանքի ձեւեր, ապա գեղեցիկ ձեւեր և վերջապէս պիտի կրկնուին թուագիտական վարժանքներ։

Հաստատուն ձեւ մը առաջ բերելու համար առ նուազն չորս կաւար ունենալու է։ Պէտք է զգացնել տղայոց թէ՝ ինչպէս պատրաստ ձեւ մը կրնայ փոփոխութիւններ կրել եզերքներու և անկիւններու ընդարձակումովը ու սեղմումովը։ Կաւարի աշխատութիւնը մինչեւ կողովաշինութեան կը տանի։ Աշխատութեան գլխաւոր պայմանն է որ լայնութեան կաւարները պարբերաբար անցնին երկայնութեան կաւարներու տակէն ու վրայէն։

## ԺԵ. ՆՈՒԷՐ — ԵՐԻԶՆԵՐ

(Տես տախտակ ԻԹ. Լ.)

Կաւարին շէնքերը որքան ալ գեղեցիկ ըլլան տետրակներու մէջ չ'են պահուիր. ասկէ զատ կաւարին չ'ենք կրնար տալ բոլոր այն նուրբ ծալքերը, որ թղթէ երիզը կ'առնայ իբր աւելի ճկուն ու կերպընկալ նիւթ։

Հիւսուածքի համար գործածուած երիզները 1 սանթիմէթր լայնութիւն և առ նուազն 30 սանթիմէթր երկայնութիւն պիտի ունենան։ Երիզներով կը շինուին երկրաչափական ու գեղեցկագիտական ձեւեր։ Պատկերներն աւելի սիրուն կ'ըլլան եթէ ձեւերն իրարու մէջ հիւսուած ըլլան։ Երիզագործութեան մէջ աշխատելու է որ երիզները փոխն'ի փոխ վրան ու տակը գտնուին ամեն անգամ բան մը կորսնցնելով իրենց երկայնութենէն։ Գործին նպատակն է մարզել տղոց մատները, զարգացնելով միանգամայն գեղեցկագիտական ճաշակը։ 5-6 տարեկանէն կարելի է սկսիլ երիզագործութեան։ Առաջին անգամ կը շինուին առանց ասեղի, հիւսուածքի կարգ մը ձեւեր, յետոյ կեանքի առարկաներ և վերջապէս գեղեցկագիտական ու երկրաչափական ձեւեր։

## ԺԶ. ՆՈՒԷՐ — ԴԵՐՁԱՆՈՒԹԻՒՆ

Տես տախտակ ԼԱ. եւ ԼԲ.

*Ինչպէս գաւազանիկը ուղիղ գիծերու, այնպէս ալ դերձանը կոր ձեւերու գծագրութեան պատրաստութիւնն է։ Տղոց մէջ, դերձանով զբաղելու փափաքը բնական է։ Կանգուն մը դերձանը երկու տղոց ձեռք զուարճութեան անսպառ աղբիւր մըն է։ Դերձանին երկու ծայրերը կցուածին պէս բոլորակ մը կ'ստացուի. այդ պատրաստ բոլորակն է որ մատներուն վրայ տարբեր առումներով կը ներկայացնեն իրարու, կ'առնեն իրարմէ և երեւան կու գան օրօրոցներ, ծովեր, ձուկեր, սղոց, տարանկիւն եւայլն։ Տղոց վարժութիւնը դերձանին առած զանազան ձեւերուն ու իրական առարկաներու մէջ նմանութիւններ կ'ստեղծէ, որոց վրայ անվերջ խօսակցութիւններ կը բացուին։ Իրականէն դատ կը շինուին նաև գեղեցիկ ձեւեր։ Պարտէզի մէջ այս ձեւերը գրավէմի վրայ կը շինուին ու կը գծուին։ Գեղեցիկ ձեւերու համար բամպակէ ա-նոլոր ու թաց դերձան կը գործածուի, որուն երկու ծայրերը աննշ-մարելի հանգոյցով մը միացած են։ Դերձանին ձեւը գրավէմին վրայ պատրաստուելէն վերջ, քար-գրիչով շրջագիծը կ'առնուի։ Այս աշխատութեան մէջ ձեռքին ու աչքին զուգընթաց գործունէութիւնը կը զօրանայ։*

6–8 *տարեկան տղոց դերձանի տեղ կը տրուի նաև երկաթէ կակուղ թելեր։ Առարկաներու ձեւերը թելով պատրաստելու համար կը տրուի* ագռաւ *բռուած գործիքը։*

# ԺԷ ՆՈՒԷՐ — ԳԾԱԳՐՈՒԹԻՒՆ

(Տախտակ ԼԴ. ԼԴ. ԼԵ. ԼԶ. ԼԷ.)

*Մեր մէջ գծագրութեան ուսումը մինչեւ հիմայ լքեալի կարգ մնացած է. եթէ տղան դպրոցին մէջ սորվեցաւ՝ աղէկ. իսկ եթէ ո՛չ, բան մը չի կորսնցներ։ Նոյն իսկ դաստիարակներէն շատերը դեռ լաւ ուսումնասիրած չեն կրթութեան այդ կարեւոր ուժը։ Դպրոցներու մէջ գրատախտակին վրայ կը գծուի պատկեր մը, կամ ուսուցչին սեղանին վրայ կը դրուի գաճէ կաղապար մը. ամբողջ դասարանը, նոյն իսկ ուղիղ գիծ մը քաշելու անվարժ տղայք, կը մրոտեն իրենց տետրակները։ Դասատուն՝ գործին բերմամբ ժամանակէ մը ետք ընտրեալներու սակաւթիւ խումբ մը կունենայ, որոնք ընդօրինակութեամբ կ'զբաղին. միւսներու մասին ուշադրութիւն դարձնող չիկայ։ Ուսուցչին գլխաւոր նպատակն է ամավերջի քննութեանց առթիւ, տարեկան աշխատութեանց իբր արդիւնք ներկայացնել քանի մը պատկերներ, որոց մեծ մասը իր ձեռքէն ելած է։*

*Ու սակայն որքա՛ն գեղեցիկ յատկութիւններ կը մշակուին գծագրութեան դասին, եթէ նպատակին յարմար աւանդուի։ Գծագրութեան դասին տղան կը դիտէ առարկաներուն ձեւը, կը վարժեցնէ աչքը ստուերաց տարբեր երանգներուն, կը զարգացնէ դիտածը կենդանի պատկերելու ձիրքը, այսինքն, կը սրէ յիշողութիւնն ու երեւակայութիւնը եւլն.։ Գծագրել՝ տղուն բնական փափաքն է. բաւական է ձեռքը տալ կտոր մը թուղթ եւ մատիտ մը, տեսնելու համար թէ՝ ինչպէս բոլորանուէր անձնատուր կ'ըլլայ այդ զբաղումին։ Տղայոց այդ փափաքը կը լրացնէ մանկական պարտէզը։ Ֆրէօպէլի ամբողջ դրութիւնը, ինչպէս են կարը, կիտանկարը, գաւազանիկները, կաւարն ու օղակները գծագրութեան պատրաստութիւններ են։*

*Ֆրէօպէլի գծագրութեան տետրակները քառակուսի ցանցերով ծածկուած են, որոց մէջ պիտի գծէ տղան զանազան առարկաներու գեղեցիկ ձեւեր։*

*Ինչպէ՞ս եւ ե՞րբ պէտք է սկսիլ գծագրութիւնը. ահա՛ հար[illegible]ց շատերուն մտածել կուտայ։ Այս խնդրոյն մէջ անձը*

մէջադրութեան կանոնի։ Թէ երեք տարեկան տղու մը մէջ բանի մը մրոտելու փափաքը արթնցած է, հասած է նաեւ ժամանակը գըծագրութեան։

Գծագրութեան համար երկու տեսակ կը գործածուի. մին ցանցաւոր եւ միւսը անցանց։ Առաջինին մէջ ցանցի օգնութեամբ գըծուածը, տղայք կ'անցնեն երկրորդին մէջ առանց օգնական գիծերու։

## ՆՈՒԷՐ ԺԸ. — ԿԻՏԱՆԿԱՐ

(Տախտակ ԼԸ. ԼԹ. Խ. ԽԱ.)

*Ծաւալներէն, մակերեւոյթներէն ու գիծերէն վերջը, բնական էր անցնիլ կէտերուն։ Ֆրէօպէլ խաւաքարտի ծակոտումը կը մտցնէ իր պարտէզին մէջ, 6—7 տարեկան տղոց ծակոտելու անձկին գոհացում տալու համար։ Ամէն ծնողք տեսած է որ այդ հասակին մէջ տղայք թուղթ ու գնդասեղ կուզեն չարունակ. անոնք այդ չնչին նիւթերով բազմատեսակ նկարներ կը յօրինեն ծակերու գեղեցիկ ու համաչափ շարքով։ Կիտանկարի համար կը ծախուին ճերմակ կամ գունաւոր քառակուսի հաստ թուղթեր* 1 dcm. *տարածութեամբ։ Խիստ մանր տղոց այս զբաղումը չի յարմարիր, որովհետեւ բաւական դժուար է ու ճշդութիւն կը պահանջէ։ Կիտանկարի դասը կը տրուի* 6—7 *տարեկան տղոց ցերեկի էն պայծառ ժամուն, առ առաւելն* ¼ *ժամ։ Կիտանկարի նպատակն է կենդանիներու, ծաղիկներու, զանազան առարկաներու եւ տեսարաններու պատկերները ձեւացնել ուռուցիկ կէտերով։ Աշխատութեան նիւթերն են* 1.— *քառակուսի ընտիր խաւաքարտ,* 2.— *օրինակի պատկեր,* 3.— *ոսկորէ կամ փայտէ կոթով ասեղ մը։ Խաւաքարտը օրինակելի պատկերէն քիչ մը պզտիկ պիտի ըլլայ, որովհետեւ վերջինին եզերքները խաւաքարտին տակը պիտի դառնան, որպէս զի զբաղումի ժամանակ չի շարժի եւ նկարը չ'աւրուի։ Այս ձեւով պատրաստուած խաւաքարտն ու պատկերը թաղիքի քառակուսի կտորի մը վրայ կը դրուին աշխատելու համար։ Ասեղը այնպէս պիտի բռնուի որ ցուցամատը կոթին գագաթը ըլլայ, բթամատը ձախ կողմը եւ միջամատն ու մատնեմատը՝ աջ կողմը։ Տղայք ծակեր կը բանան նկա-*

ըլլի ամէն մէկ գծին վրայ իրարմէ հաւասար հեռաւորութեամբ։ Ուշադրութիւն ընելու է որ ծակերը, կլոր և հաւասար ըլլան ու իրարմէ հաւասար հեռաւորութիւն ունենան։ Ասոր համար ասեղը ուղղահայեաց բռնելու է։

Եթէ օրինակին տակէն խաւաքարտը հանենք, վրան կը տեսնենք պատկերին ամբողջ շրջագիծը կէտերով նկարուած։ Խաւաքարտին հակառակ կողմը, ուր պատկերին ծակոտկէն շրջագիծը կը տեսնուի նոր աշխատութիւն մը կուզէ։ Շրջագիծին ամբողջ ներքին մասը մանր կէտերով պիտի լեցուի։ Այս վերջին գործողութիւնը միայն այն կէտին կը կատարուի երբ նկարին ուռուցիկ երեւոյթ մը տալ ուզուի։

Ծակոտումը կ՚սկսի նախ այնպիսի խաւաքարտերու վրայ որոնք քառակուսի գիծեր ունին։

Առաջին անգամ կը ծակոտենք քառակուսիներուն անկիւնները, ապա երկու անկեանց միջավայրը, վերջապէս քառակուսիներուն կեդրոնը։ Կը ծակոտենք ուղղահայեաց, հորիզոնական, ու շեղ գիծեր, անկիւններ, կոր գիծեր, գծագրութեան տետրակին օրինակները — գիւղական շէնքեր, երկրագործական գործիքներ, զանազան առարկաներ եւն.։ Կոր գիծերու կիսանկարը ընականաբար կը յաջորդէ ուղիղ գիծերուն։ Կիսանկարով կը մարզուին ձեռաց մկանները և աչքերը, որոնք կը վարժուին ուշադրութեան առնել մանր զարդերը և չափել երկու մերձաւորագոյն կէտերու հեռաւորութիւնը։ Մեր պատկերներուն մէջ կը տեսնուին կիսանկարի աւելի բարդ ձեւեր։ Նախնական պարզ ձեւերը պէտք է առնել գծագրութեան օրինակներէն։

Տկար աչք ունեցող տղոց արգիլուած է այս զբաղումը։



## ՖՐԷՕՊԷԻԻ ԺԹ. ՆՈՒԷՐԸ — ԽԱՒԱՔԱՐՏԻ ՎՐԱՅ ԿԱՐ

(Տե՛ս տախտակ ԽԱ. ԽԲ. ԼԹ. Խ.)

*Տղոց հաճելի զբաղումներէն մէկն ալ խաւաքարտի վրայ կարելն է։ Կարի նախապատրաստութիւնը կը տեսնուի կիտանկարի դասին։ Նկատելով որ կարը կիտանկարին կը յաջորդէ, նկատելով որ կիտանկարը 5—6 տարեկան տղոց միայն կրնանք տալ, պզտիկները այս հաճոյքէն չի զրկելու համար կրնանք գործածել ծակոտուած խաւաքարտեր, որոց վրայ տղայոց կարի ձեւերը կանուխէն պատրաստած ենք։*

*Կարը կ՚ըլլայ մետաքսով կամ բուրդով։ Կարին ասեղը քանավայի 23—24 թիւ ասեղն է։ Կարելու պարզագոյն ձեւն է ծակերուն մէկ վրայէն մէկ տակէն անցնել ասեղը, ու թէեւ պարապ միջոցներ կը մնան, բայց հակադարձ կարով մը կը գոցուին անոնք։*

*Կարի օրինակներ պատրաստելու համար պարտիզպանուհին գծագրութեան պէտք ունի. անոնք որ զուրկ են այս կարեւոր ուսումէն կրնան գործածել «Կարի Դպրոց» անուն տետրակները, որոց մէջ բազմաթիւ օրինակներ կան թէ կարի եւ թէ կիտանկարի։ Կան նաեւ կարի նիւթեր պարունակող տուփեր։ Ասոնց մէջ զանազան մեծութեամբ ու գոյնով խաւաքարտեր կան ծակելու համար. կան ծաղիկներու, բոյսերու, զանազան առարկաներու պատկերներ եւ կրկնոլոր գունաւոր բուրդեր։*

*Ոեւէ նկար խաւաքարտին վրայ հանելու համար կը գործածեն* papier á calquer։

*Մեր կարծիքով կարի գործը կիտանկարէն առաջ կարելի է տալ միայն այն պարագային, երբ ոեւէ պատճառով զբաղումի պակասութիւն կզգանք։*

*Տղայոց հաճոյք պատճառելու եւ ցոյց տալու համար թէ՝ իրենց աշխատութիւնն ալ իր արժէքը ունի, կարուածներէն կը պատրաստենք զանազան առարկաներ—պատկերակալներ, ձեռնոցի տուփեր, ժամացոյցի չրջազարդեր, ափսէներ ելն.։*



## Ի. ՆՈՒԷՐ—ԿԱՒ

Ցեխի կամ կաւի խաղը ամէն երկրի տղոց հաճելի ժամանցն է։ Տղայոց այս բնական հակումը չահագործուած է պարտէզին մէջ զբաղումովը կաւին, որ ցեխէն աւելի կաղապարուելու յարմարութիւն ունեցող նիւթ մըն է։ Այստեղ կաղապարումի պատկերներ չենք դրած, որովհետեւ համոզուած ենք թէ՝ կաղապարումը միայն այն ատեն օգտակար ու զարգացուցիչ կ՚ըլլայ երբ օրինակը բնութենէն առնուի։

Կաւը կարելի է գտնել ամէն տեղ ուր որ բրուտի գործարան կը գտնուի։ Պոլսոյ մէջ լաւագոյն կաւը կրնանք ստանալ Գեղարուեստից վարժարանէն։

Զբաղման կարեւոր նիւթերն են,

Ա. Կաղապարիչը — փայտէ փոքրիկ թիակ մը։

Բ. Գլանակ մը — ճիշդ այն գլանակին նման որով գաւառները խմոր կը բանան։

Գ. Պնակը — փայտէ քառակուսի տախտակ մը, որուն վրայ կաւը կը գործուի։

Դասէն առաջ կաւը կը թրջուի, կը շաղուի ձեռքով, կը բացուի ու կը ծալլուի գլանակով։

Պարտիզպանուհին տղոց կը բաժնէ մէյմէկ պնակ, կաղապարիչ եւ քիչ մը կաւ։

Կաւին վրայ կարեւոր ծանօթութիւններ տալէն յետոյ, չինել կուտայ գունտեր, օղակներ, կոճակներ ելն. ասոնցմէ յետոյ կանցնի աւելի բարդ ձեւերու։ Ծանօթ առարկաներու կաղապարումին կը յաջորդէ ընտանեկան խօսակցութիւնը։

Երկրաչափական մարմինները — գունտ, խորանարդ, գլան, աղիւս, պրիսմակ եւն. չի պիտի մոռցուին նմանապէս։

Բնական վարժութենէն յետոյ կը չինեն խոհանոցի կարասիներ, պտուղներ, տակառներ եւն., որոց ամենէն աւելի յաջողուածները քաջալերութեան համար կը չորցուին ու կ՚եփուին պահելու համար։

Կաւի զբաղումը 4 տարեկանէն կ՚սկսի։

## ԻՄ ՆՈՒԷՐՍ — ՑՕՂՆԻԿ

Հիւսուածքի ամենէն յարմար նիւթը մեր դաշտաններուն մէջ ցորենի ցօղունն է։ Ցորենի ցօղունը աշխատութեան ժամանակ չի կոտրիր, միւս բոլոր նիւթերէն աւելի ճկուն է, ասկէ զատ այնքան ճերմակ ու նուրբ է, որ անով պատրաստուած հիւսուածքները սիրուն տեսք մը կ'ունենան։ Ցօղունները դաշտերէն յատկապէս ժողվել տալու է, վասն զի կալին մէջ կալսուելէն յետոյ գործի չեն գար։

Հասկերէն մաքրուած ցօղունները խուրձ մը ընելով զով տեղ մը պահելու է։ Դասէն քանի մը ժամ առաջ պէտք եղածին չափ ցօղուն պաղ ջուրը կը դնէք, ջուրէն հանելէն ետքը լաթի մը վրայ կը փռէք որ քիչ մը չորնայ, վերջապէս ծանր ու տափակ առարկայով մը կը հարթէք, որպէս զի հիւսուածքին մէջ պառկին։

Իւրաքանչիւր տող 3 ցօղուն կ'առնէք. ասոնց մէկ ծայրը հաստատուն առարկայի մը կապելով կ'սկսին հիւսել կանանց մազի հիւսքին նման. միայն ուշադրութիւն ընելու է որ ցօղունները իրենց հարթ վիճակը պահեն։ Երբ ցօղուններէն մէկը հատնի կարելի է երկայնել սպառածին ծայրի ծակին մէջ նոր ցօղուն մը մխելով։ Բաւական վարժուելէն յետոյ կը սորվեցնէք թէ ասոնցմով ինչպէս կը շինուին գլխարկներ, կողովներ, զամբիւղներ ևլն.։ Ասոր համար հիւսուածքները իրարու վրայ պիտի դրուին այնպիսի ձևով մը որ տակի կարգը կէս մը դուրս մնայ վրայի կարգէն։ Այս ձևով երկու հիւսքէն իրարու վրայ դնելով կը կարեն բարակ դերձանով, ու կարգերը տակաւ իրարու կը յաջորդեն յիշուած կարգով։

## ԱՌԱԿՆԵՐՈՒ ԲԱՆԱՍՏԵՂԾՈՒԹԻՒՆՆԵՐ

Մանկական պարտէզներու մէջ տղոց ուշադրութիւնը ուղղելու և Հայ լեզուի ծանօթութիւնը զօրացնելու համար, պէտք է տալ տոհմային առակներ ու բանաստեղծութիւններ։

Տոհմային առակներ թէև չեն պակսիր մեր մէջ, սակայն անոնց մէկ կանոնաւոր և ճոխ հաւաքոյթը չունինք։ Ունինք օտար առակախօսներու թարգմանութիւններ, որոց մէջ ամենէն ընտիրն է «Քռիլովինը»։ Քռիլովի առակները եթէ ընտրանօք տրուին շատ կը

յարմարին պարտէզի տղայոց։ Պարզ ու նկարուն ոճ, սրամիտ ուկենդանի պատմութիւն, գեղարուեստական սարք, համառօտութեան մէջ նիւթին բազմակողմանի պատկերացումը, խիստ թանկագին յատկութիւններ են ըստ մանկավարժութեան։ Առակներ սորվեցնելու մէջ կանոն ընելու է.

Ա. Բաց թողուլ առակներուն սկիզբը կամ վերջը տեսնուած բարոյական քարոզը։

Բ. Ընտրել այն առակները, որոնց մէջ գործողները տղոց ծանօթ կենդանիներ կամ առարկաներ են։ Քռիլոֆի բոլոր առակները չեն յարմարիր տղայոց, անոնց մէջ այնպիսիներ կան, ուր սրամիտ երգիծանքի նիւթ կ'ըլլան, տղոց համար անըմբռնելի կենցաղի զանազան երեւոյթներ։ Պալով բանաստեղծութեան՝ մանուկ կեանքն է որ պիտի փայլի անոնց մէջ, լեզուն ու դարձուածները մանկական, նիւթերն ու երեւոյթները ծանօթ, ոճը ժողովրդական պիտի ըլլայ։ Այս պահանջներուն գոհացում տուող բանաստեղծութիւններ մեր գրականութեան մէջ շատ չեն գտնուիր, որովհետեւ մանուկ կեանքով զբաղող գրիչներ կը պակսին։ Շատեր տղոց ուղեղը պարապ աման մը կը կարծեն, ուր կարելի է լեցնել ամեն բան և ամեն ժամանակ։ Ասիկայ բնութեան հակառակ է։ Ո՞ր մայրն է որ տղուն ակռաները չելած կաթի սնունդը միսի կը փոխէ։ Մենք որ նիւթականին մէջ այդ քան համակերպող ենք բնութեան, ինչո՞ւ իմացականին մէջ չենք հետեւիր նոյն շաւղին։ Մեր մէջ մրցում մը կայ տղոց ամէն բան սորվեցնելու, մանաւանդ հանդէսներու համար։ Ցաւալի է լսել 5—6 տարեկան և աւելի փոքր տղոց բերնէն — գիտական բարձր ծանօթութիւններ, ընկերական կարգուսարքի վրայ դատումներ, բարոյական պարզ քարոզներ։ Ասոնք մանուկ-ծերուկներ են կեղծ զգացումով, դատումով և գիտութեամբ զարդարուած։ Տղոց պէտք է սորվեցնել ժողովրդական-մանկական բանաստեղծութիւններ, կամ այդ ուղղութեամբ գրուածները նշանաւոր մանկավարժներու կողմէ (*)։

Տղուն՝ իր չհասկցածը սորվեցնելը կրկին վնաս ունի, նախ՝ կը վարժուի չըմբռնածը, չի հասկցածը կրկնելու կեղծիքին. երկրորդ՝ յումպէտս կը վատնուի ժամանակը, որ աւելի օգտակար գործի մը կրնար յատկացուիլ։

(*) Տես ընթերցարան «Մանկական Պարտէզ» Պալագեան։

Միանգամ ընդ միշտ ըմբռնելու է որ տղայք ամէն բան իրենց համար կը սորվին. անոնք դերասաններ չեն, ու պէտք չունին ուրիշներու հաճոյք պատճառելու համար զրկուիլ իրենց մտքին դիւրամարս սնունդէն (*)։

## ԵՐԳ

Ինչպէս խաղը իրեն համապատասխան շարժումներով, նոյնպէս մանկական երգը իր դաշն ու մեղմ եղանակով կենդանութիւն տուող տարրն է Մանկական պարտէզներուն։

Մարդկային կենաց անհրաժեշտ տարրերէն մէկն է երգը, որ մանկութեան երգերէն կը փոխուի պատանեկութեան, առնութեան և ծերութեան երգերու։ Ամէն հասակ իր ուրոյն զգացումները, յոյզերն ու ցաւերն ունի, լեզուն չի զօրեր իր բառերով բացատրել ներքին կիրքերն և յուզումները, երգը օգնութեան կը հասնի անոր։ Երգերու տպաւորութիւնը լեզուով չի բացատրուիր։ Երգը՝ հոգին բարձրացնող, սիրտը ազնուացնող դեր մը ունի մանաւանդ մանուկին համար, որ առանց երգի չի կրնար ապրիլ։ Մանկական երգերը իրենց բովանդակութեամբ ու եղանակով տարբեր են չափահասներու երգերէն։ Տղայք դեռ ճաշակած չեն կեանքի դառնութիւնը, դեռ մղած չեն գոյութեան պայքարը; անոնց անծանօթ է յուսահատութիւնը, ապերախտ սէրը, հեռաւոր պանդուխտին ու երկրին կարօտը, մահուան անողոք հարուածը, մարդասիրական բարձր զգացումներ, կեանքի թախիծն ու վիշտը. անոնք կ՚ապրին երկինքի թռչուններուն պէս անհոգ ու անտրտում. անցեալն ու ապագան գոյութիւն չունին անոնց համար. անոնք իրենց ամբողջութեամբ նուիրուած են ներկային։

Ուստի մանկական երգերը իրենց մէջ չի պիտի բովանդակեն անցեալին ու ապագայի անհարկութիւններ, ո՛չ ալ չափահասները չահագրգռող զգացումներ ու կիրքեր։ Երգը տղոց ներկայ կեանքը պիտի պատկերէ իր բոլոր մանրամասնութիւններով։ Եղանակին մէջ ձայնի յանկարծական անկումներ ու բարձրացումներ չի պիտի ըլլան։

Պարտիզպանուհին երգ սորվեցնելէն առաջ անոր բովանդակութիւնը իբր պատմութիւն պիտի աւանդէ ու կրկնել տայ. այնուհետև տղայք սիրով ու դիւրաւ կ՚ուսանին բանաստեղծութիւնը։

Երգերուն եղանակները համաչափ քայլի վարժութեանց ժամանակ սորվեցնելը ամենէն ընտիր միջոցն է։

(*) Մանկապարտէզի ընթերցանութեան ու գրութեան մեթոտը տես «[illegible] Մանկապարտէզ» ընթերցարանի յառաջաբանին մէջ։

# ՊԱՏԿԵՐՆԵՐՈՒՆ ՑԱՆԿԸ

## Ա. ՏԱԽՏԱԿ

1. Ազատ գնտակ
2. 6 գնտակներ
3. Օրօրոցին գնտակը
4. Ճօճանակ
5. Կոր շարժում
6. Վեր, վար, կամաց, արագ
7. Զուգահեռական
8. Հարուած
9. Անկում
10. Շրջանակի դարձ
11. Նոյն գիծին վրայ ելեւէջ
12. Ոստում առարկայի մը վրայէն
13. Կարճ ու երկայն ճօճանակներ
14. Անկիւններ

## Բ. ՏԱԽՏԱԿ

1. Գունդ, գլան, խորանարդ
2. Երիզաւոր Գնդակ
3. Գլան a. b. c. օղակներ դարձնելու համար
4. Խորանարդ a. b. c. օղակներ դարձնելու համար
5. Խորանարդը առանցքին վրայ դարձնել
6. Խորանարդին առած ձեւերը
7. իր շրջանակին
8. դարձին մէջ

## Գ. ՏԱԽՏԱԿ (Ա. ՏՈՒՓ ՇԻՆՈՒԹԵԱՆ)

1. Սեղան
2. Աթոռ
3. Երկու աթոռ
4. Անկողին
5. Պահարան
6. Բազմոց
7. Բազկաթոռ
8. Վառարան
9. Երկու խաչեր
10. Ջրհոր
11. Դարպաս
12. Խրճիթ
13. Դարպաս ու դռնակ
14. Պարտէզին պատն ու դուռը

## Դ. ՏԱԽՏԱԿ

1. Զոյգ դռներ
2. Բարձր դուռ
3. Դուռ աշտարակով
4. Տուն
5. Ամարանոց
6. Շոգեշարժ մեքենայ
7. Աւերակ Տուն
8. Խանութներ
9. Խաչ մը պատուանդանով
10. Մահարձան
11. Ճամբու սիւն (Քիլօմէթր)
12. Մեծ խաչ

## Ե. ՏԱԽՏԱԿ (Բ. ՏՈՒՓ ՇԻՆՈՒԹԵԱՆ)

1. Սեղան
2. Աթոռ
3. Անկողին
4. Բազմոց
5. Պահարան
6. Բազկաթոռ
7. Վառարան
8. Ջրհոր
9. Սանդուխ
10. Դարպաս ու դռնակը
11. Պատշգամ մը կլոր սանդու-խով

## Զ. ՏԱԽՏԱԿ

Թիւ 1—16. Գեղեցկագիտական ձեւեր խորանարդներով
» 1—12. » » աղիւսներով:

## Է. ՏԱԽՏԱԿ

1. Գիւղ մը իր եկեղեցիովն ու մատուռովը. 2. Գործարան. 3. Աւազան: 4. եւ 5. Քաղաքի շէնքեր — երկու տուներ:

## Ը. ՏԱԽՏԱԿ

6. Մահարձան. 7. Գերեզմանին խաչը. 8. Տղուն անկողինը. 9. Բազմոց: 10. Ճաշասեղան մը երկու աթոռով եւ երկու սարքով:

## Թ. ՏԱԽՏԱԿ

1. Քառուկիր տան մը ճակատը. 2. Ֆրէօպէլի յիշատակարանը որ կը շինուի Բ. Ե. եւ Զ. նուէրներով:

## Ժ. ՏԱԽՏԱԿ (ԳԵՂԵՑԻԿ ՁԵՒԵՐ)

Առաջին չորս ձեւերը Ե. նուէրի խորանարդներովը շինուած են. մնացեալները՝ թիւ 1. եւ 2. Զ. նուէրի աղիւսներովը կազմուած են:

## ԺԱ. ՏԱԽՏԱԿ

Զ. նուէրի աղիւսներով շինուած գեղեցկագիտական ձեւեր թիւ 1—8:

## ԺԲ. ՏԱԽՏԱԿ

Գունաւոր մակերեւոյթներով (մոզայիքներով) կազմուած գեղեց-կագիտական ձեւեր: Այս ձեւերուն մէջ կը գտնուին քառակուսին, եռանկիւնը, հաւասարակող եւ ուղղանկիւն եռանկիւններ:

## ԺԳ. ՏԱԽՏԱԿ (ԾԱԼՔ)

1—10 թիւերուն մէջ քառակուսի թուղթը կը վերածուի պզտիկ քառակուսիի մը, որուն մէկ մողմը երեք հաւասարակող ուղղանկիւն եռանկիւններ կը տեսնուին: Թիւ 11 հակառակ կողմն է թիւ 10ին: Թիւ 12. 13. 14. 15 քառակուսւոյն անկիւնները վերսէն կեդրոնին վրայ կը ծալլուին մինչեւ որ նոր ու աւելի մանր քառակուսի մը (15) ստացուի: Թիւ 16—19 երրորդ անգամ քառակուսւոյն ծալքերը կը ցուցնեն, որով կ'որոշուի ամենամանր քառակուսի մը (19): Թիւ 20ը մեկնանկիւն է զանազան ծալքի ձեւերու, որոց մէջ կը տեսնուին նաւակ, սափոր, սակառ, գլխարկ, ճապիկ եւլն.:

## ԺԴ. ՏԱԽՏԱԿ

1. Քառակուսի մը որուն անկիւնները ծալլուած են կեդրոնին վրայ: 2—28. Գեղեցիկ ձեւեր:

## ԺԵ. ՏԱԽՏԱԿ ԵՒ ԺԶ. ԺԷ. ՏԱԽՏԱԿՆԵՐ

Կտրուածքի օրինակներ. ԺԵ.ը բարակ թղթի վրայ իսկ ԺԶ. եւ ԺԷ. ստուարաթղթի վրայ:

## ԺԸ.—ԻԱ. ՏԱԽՏԱԿՆԵՐ

Հիւսուածքի ձեւեր: Թիւ 1. Առէջ: Թիւ 2. Թեզան: Թիւ 3. Փայտի ասեղ:

## ՏԱԽՏԱԿ ԻԲ.

Գաւազանիկներ:

## ՏԱԽՏԱԿ ԻԳ.

Օղակներ:

## ՏԱԽՏԱԿ ԻԴ. ԵՒ ԻԵ.

Սիսեռի գործ: Վերջին տախտակին 5. 6. 12. թիւերուն վրայ տեսնուած հարթ մակերեւոյթները խաւափարտի կտորներ են:

## ԻԶ. ՏԱԽՏԱԿ

1—9. Երկրաչափական մարմիններու գծակողմը. 10. Բազկաթոռ. 11. Պարտէզի նստարան. 12. Գրասենեկի կողով. 13. Սրճաղաց:

## ՏԱԽՏԱԿ ԻԷ, ԵՒ ԻԸ,

Կաւարի հիւսուածք:

## ՏԱԽՏԱԿ ԻԹ, ԵՒ Լ,

Երիզագործութիւն:

## ՏԱԽՏԱԿ ԼԱ, ԵՒ ԼԲ,

5էն 6 տարեկան տղոց համար դերձանի գործ, իսկ 6—8 տարեկաններուն համար նոյնը երկաթ թելով:

## ՏԱԽՏԱԿ ԼԳ,—ԼԷ,

Գծագրութիւն:

## ՏԱԽՏԱԿ ԼԸ,—ԽԲ,

Կիտանկարի եւ կարի օրինակներ:



# ԿԱՐԳԱՑՈՅՑ ԶԲԱՂՄԱՆՑ ՊԱՐՏԷԶԻ (1)

## ՁՄԵՌ

| ԺԱՄ | ԿԱՐԳ | ԲՇ. | ԳՇ. | ԴՇ. | ԵՇ. | ՈՒՐ. | ՇԲ. |
|---|---|---|---|---|---|---|---|
| 9—12 | Ա. Բ. | Դիտողական ուսուցում | | | | | |
| | Ա. Բ. | Մարմնամարզական խաղեր սրահին մէջ | | | | | |
| | Ա. | Շինութեան տուփեր | Հիւսուածք | Գաւազանիկ | Ցօղնաշար | Դերձանի գործ. | Կարդալ գրել |
| | Բ. | Հիւսուածք | Ծալք | Գծագրութիւն | Թուղթ կտրել | Կար | Կաղապարում |
| 2—4 | Ա. | Գաւազանիկ | Ուլունք կամ ցօղնաշար | ԱԶԱՏ | Բ. տուփ կամ նուէր | Մոզայիք | ԱԶԱՏ |
| | Բ. | Շինութեան տուփեր | Օղակներ | | Հիւսուածք | Ցարդի գործ. | |
| | Ա. Բ. | Մատներու խաղ | | | Մատներու խաղ | | |
| | Ա. Բ. | Պատմութիւն | | | Պատմութիւն | | |

## ԱՄԱՌ

| ԺԱՄ | ԿԱՐԳ | ԲՇ. | ԳՇ. | ԴՇ. | ԵՇ. | ՈՒՐ. | ՇԲ. |
|---|---|---|---|---|---|---|---|
| 9—12 | Ա. Բ. | Դիտողական ուսուցում | | | | | |
| | Ա. Բ. | Մարմնամարզական խաղեր պարտէզին մէջ | | | | | |
| | Ա. | Շինութեան տուփեր | Գործողութիւն | Հիւսուածք | Գաւազանիկ | Ծալք | Կաւար |
| | Բ. | Ծալք | Կարդալ գրել | Գծագրութիւն | Կարդալ գրել | Կտրել փակցնել | Ցարդի գործ. |
| 2—4 | Ա. Բ. | Ազատ խաղ | | ԱԶԱՏ | Ազատ խաղ | | ԱԶԱՏ |
| | Ա. | Պատմութիւն | | | Պատմութիւն | | |
| | Բ. | Շինութեան տուփեր | Սիսեռի գործ. | | Կաւար | Օղակներ | |
| | Ա. Բ. | Մատներու խաղ | | | Մատներու խաղ | | |

(1) Կարգացոյցին զբաղումներն ըստ կամս կը փոխուին ։

## ՄԱՆԿԱԿԱՆ ԵՐԳԵՐԸ ՀԵՏԵՒԵԱԼՆԵՐԸ ԵՆ (1)

Ա. Մուտքի երգեր
Բ. Քայլերգ
Գ. Վազելու եւ նստելու երգեր
Դ. Շրջանի երգեր
Ե. Նմանողութեան երգեր
Զ. Մատներու երգեր
Է. Գնտակի երգեր
Ը. Արձակման երգեր
Թ. Մանկական աղօթքներ:

## ՄԱՏՆԵՐՈՒ ԽԱՂ







## ԹՌՈՒՑԻԿ

Երկնի վրայ պահակի պէս,
Թռուցիկ,, հոս ի՞նչ կ'ընես.
Մերթ դէպի վեր, մերթ դէպի վար,
Կը թափառիս հողմավար:

Թռչունի պէս կայտառ ու ժիր
Ամենեւին չես հանգչիր.
Մերթ դէպի վեր, մերթ դէպի վար,
Ցատկէ թռի՛ր, անդադար:

Դարձիր, դարձիր, իմ թռուցիկ
Գլուխդ վեր ուղղաձիգ,
Ու դառնալուդ ամեն անգամ
Ըսէ՛ հովերն ուսկից կու գան:

Ու դառնալուդ ամեն անգամ
Ըսէ՛, հովերն ուսկից կու գան

(1) Տես երես 93:

Երկնի վրայ պահակի պէս Թռուցիկ հոտ ի՞նչ կ'ընես մերթ դէպի վեր մերթ դէպի վար կը Թափա

ռիս հող մավար դարձիր դարձիր իմ Թըռու ցիկ, գը լու խըղ վեր, ուղղաձիգ ու դառնա

լուդ ա մեն ան գամ, ցոյց տուր հովերն ուսկից կու գան, Թըռ չունի պէս կայտառ

ժիր ա մե նեւին դու չես հանգչիր մեյ Թ դէպ ի վեր մերթ դէպի վար ցատկէ

Թը ռիր ան դա դար, ու դառնալուդ ա մէն ան գամ ըսէ՛ հովերն ուսկից կու գան

**ԾԱՆՕԹ.**— *Տղայք սեղաններուն վրայ կը դնեն արմուկնին ու դրօշի մը պէս բացուած ձեռքերով կը ձեւացնեն Թռուցիկին շարժումները։ Խաղին առաջին մասին մէջ աջ՝ և երկրորդին մէջ՝ ձախ ձեռքով կը կատարեն շարժումները։*

*Այս խաղին մէջ բազուկը, ձեռքերն ու մատները կը մարզուին*

## ՔԱՅԼԵՐԳ

Օն առաջ օն առաջ մենք քայլ կ'առնենք ձայնու աչ օն առաջ քաջալանջ զոյգ զոյգ զալեննք աղջիկ մանչ

Անցաւ օրը այլ աւաղ գիշերն հասաւ անյապաղ գիշեր ցերեկ լոյս խաւար կը յաջորդեն միշտ յարք



Գարուն կուգայ նախ սփռել ծա ղկներն մեր անբաւ ապա ամառ աշուն ձմեռ կը յաջորդեն միշտ կարգաւ



Զոյգ մը կ'երթայ առջեւէն կը հետեւին մենք կարգաւ, նոյնը միշտ կը գործադրեն գիշեր ցերեկ եղանակ

1. Օն, յառաջ, օն առաջ,
Մեք քայլ կ'առնենք ձախ ու աջ,
Օ՛ն առաջ, քաջալանջ
Զոյգ, զոյգ, քալենք աղջիկ մանչ:

2. Անցաւ ցերեկն ալ աւաղ
Գիշերն հասաւ անյապաղ
Գիշեր, ցերեկ, լոյս, խաւար
Կը յաջորդեն միշտ իրար:

3. Գարուն կու գայ նախ սփռել
Ծաղկըներն մեր անբաւ
Ապա ամառ, աշուն, ձմեռ
Կը յաջորդեն միշտ կարգաւ:

4. Զոյգ մը կերթայ առջեւէն
Կը հետեւին մենք անքակ
Նոյնը միշտ կը գործադրեն
Գիշեր, ցերեկ եղանակ:

## ՃԱՄԲՈՐԴԵՆՔ



*Օդնէ զով հովն առուակ կը մրմնջեն ներդաշնակ ճամբորդենք լեռն ի վեր ձեռք ձեռ*



*քի միշտ անվեհեր Թող մեր երգ մեղմանուշ արձագանք տայ քնքուշ այս՛, քալենք, քալենք*



*զոյգ առ զոյգ այս է մեր մեծ հաճոյք, այո քալենք, քալենք զոյգ առ զոյն այս է մեր մեծ հաճոյք*

Որն է զով, հովն առուակ,
Կը մրմնջեն ներդաշնակ.
Ճամբորդենք սարն 'ի վեր,
Ձեռք ձեռքի միշտ անվեհեր:

Թող մեր երգ մեղմանուշ
Արձագանք տայ քընքուշ:
Այո', քալենք, քալենք զոյգ առ զոյգ
Այս է մեր ճանոյք:

## ԿԱՏՈՒՆ ՈՒ ՄՈՒԿԸ










Ճերմակ փիսիկ
Բռնել կուզայ մըկնիկ
Մուկն առաւ ձայն թաթերուն
Փախաւ գնաց շատ հեռուն
Ճերմակ փիսիկ փախցուց ձեռ-
քէն մըկնիկ:

Կամ,
Մուկը մտնել ուզեց ծակ
Բայց սուր ճանկին մընաց տակ
Ճերմակ փիսիկ
Բռնեց դժբաղդ մըկնիկ:

## ՀՈՎԻՒՆ ՈՒ ՈՉԽԱՐԸ



գէ ղին ճամբան փողին ձայնով սի րա կան մէ, մէ, մէ, մէ, մէ, մէ, մէ, մէ,

ոչ խար ներս դէ պի տուն մէ մէ, մէ, մէ, մէ, մէ, մէ, մէ, գառնուկներս դէպի տուն

Ա. Խումբը.
Երեկոյեան վերջալուսին
Հովիւն առած մախաղն ուսին
Քըշեց հօտը գեղին ճամբան
Փողին ձայնով սիրական -

Մէ, մէ, մէ, մէ . . .
Դէ՛ն, ոչխարներ դէպի տուն,
Մէ՛ մէ՛ մէ՛ մէ՛ . . .
Գառնուկնե՛րս, դէպի տուն:

Բ. Հօտը
Բարի հովիւ շատ ուրախ ենք
Վերադարձանք շուտով տուն.
Թէ ուշանանք որս կ'ըլլանք մենք,
Արիւնարբու գայլերուն:

Գ. Հովիւ
Մէ՛, մէ՛, մէ՛, մէ՛...
Դէհ, ոչխարներ դէպի տուն
Մէ՛, մէ՛, մէ՛, մէ՛...
Գառնուկներս դէպի տուն:

# ԱՂԱՒՆԻՆԵՐ

Ցրա՛նանք մենք ղուռ նա ղաւ նե տան, Թող ա ղաւ նիք ու բա՛ խա՛ նան, տե

սեք ա մե նը դուրս Թըռան դաշտ ու պարտէզ զու ար ճա ցան ցուր

տը փը չեց և րե՛ կոյեան Թըռ չունք ի րենց տու նը դար




Բանանք մենք դուռն աղաւնետան Ցուրտը փրչեց երեկոյեան
Թող աղաւնիք ուրախանան Թռչունք իրենց բոյնը դարձան :
Տեսէք ամենը դուրս բըռան Ահա ամենը ներս մըտան
Դաշտ ու պարտէզ, զուարթացան: Գոցենք մենք դուռն աղաւնետան :



# ՃԱԳԱՐ







1. Ա՛խ, պզտիկ ճագար
Նստեր ես անկար
Խեղճը չունի կեր
Պարտէզին մէջ ալ չի ցատկեր
Ցատկէ, ցատկէ ճագար,
Ցատկէ իմ պզտիկ ճագար :

2. Իմ պզտիկ ճագար,
Դու շանէն վախցար
Թէ խածնէ քեզի
Սիրտս պիտի շատ ցաւի :
Վազէ շուտ, վազէ շուտ
Չարաճիճի շունէն շուտ ։



2



ኮጉ



1.
2.
3.
4.
5.
6.
7.
8.
9.
10.
11.
12.
13.
14.
15.
16.
17.
18.
19.
20.
21.
22.
23
24.
25.
26.
27.
28.
29.
30.
31


1.
2.
3.
4.
a.
b.
c.
d.
5.
6.
7.
a.
b.
8
a.
c.
d.
9.
x.
a.
b.
e.
c
d.
10.
a.
b.
11.
e.
12.
13.
14.
15
16.

ԻԸ



L



